Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք!

ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի և ագիտացիայի բաժին

Ī - Օր.

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 11-12 (18-19)

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն «Խ. Հայաստան»
ԵՐԵՎԱՆ—1937

Պրոլետարնե՛ր բոլոր յերկրների, միացե՛ք



ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ

№ 11-12 (18-19)





ՀԿ(բ)ԿԿԿ հրատարակչություն—«Խ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ — 1937

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագիր՝ ԳԻՆՈ ՇԱՂԳԱՄՅԱՆ
Պատ. քարտուղար՝ Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Սրբ.՝ Մ. Սուրյան և Մ. Գևորգյան
Հրատ. № 14, պատվեր № 45
Գլավլիտի լիազոր Շ— 1251
Տիրաժ 10·200

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատ. «Խորհրդ. Հայաստան»-ի տպարան, Յերևան

# ՀԱՅԱՍՏԱՆԻ Կ(Բ)Կ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՅԻ ՀԱՇՎԵՏՎՈՒԹՅՈՒՆԸ ՀԿ(Բ)Կ 10-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐՈՒՄ

## ԸՆԿԵՐ Ա. ԱՄԱՏՈՒՆՈՒ ԶԵԿՈՒՅՈՒՄԸ 1937 ԹՎԱԿԱՆԻ ՄԱՅԻՍԻ 27-ԻՆ

*Ընկերնե՛ր, Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության 10-րդ համագումարը հավաքվում է Համ. Կ(բ)Կ Կենտկոմի Մարտյան Պլենումից հետո:*

*Համկոմկուսի (բ) Կենտկոմի Պլենումի վորոշումները, ընկեր Ստալինի պատմական ցուցումները պետք է կազմեն մեր կուսակցական, խորհրդային, տնտեսական ամբողջ աշխատանքի հիմքը:*

*Այդ ցուցումների լույսի տակ պետք է անցնի նաև մեր համագումարի աշխատանքը:*

*Ընկեր Ստալինը Կենտկոմի Պլենումում տված իր զեկուցման մեջ կուսակցության բոլոր անդամների, բոլոր աշխատավորների ուշադրությունը բևեռեց կապիտալիստական շրջապատման հարցերի վրա:*

«Կապիտալիստական շրջապատումը դա դատարկ ֆրազ չէ, դա շատ ռեալ և անախորժ մի յերևույթ է: Կապիտալիստական շրջապատումը—

դա նշանակում է. վոր կա մի յերկիր՝ Խորհրդային Միությունը, վորն իր մոտ սոցիալիստական կարգեր է հաստատել և, բացի դրանից, կան շատ յերկրներ՝ բուրժուական յերկրներ, վորոնք շարունակում են կապիտալիստական կյանք վարել և վորոնք շրջապատում են Խորհրդային Միությունը, առիթի սպասելով, վորպեսզի հարձակվեն նրա վրա, ջախջախեն նրան, կամ, համենայն դեպս, ջլատեն նրա ուժը և թուլացնեն նրան»:

*Կապիտալիստական պետությունները պայքար են մղում Խորհուրդների յերկրի դեմ, խորհրդային իշխանության հաստատման առաջին իսկ որից:*

*Վերհիշենք կապիտալիստական պետությունների յերկարատև զինված* ինտերվենցիան *մեր յերկրում, քաղաքացիական պատերազմի տարիներին:*

*Վերհիշենք 1920 թվականին խորհրդային հանրապետության դեմ Լեհաստանի մղած պատերազմը, վոր կազմակերպել եյին բուրժուական կառավարությունները: Զինված բանդաների հարձակումները խորհրդային տերիտորիայի վրա սահմանամերձ շրջաններում, ստոր վնասարարությունը՝ գործարաններում, հանքահորերում, ելեկտրակայաններում, յերկաթուղիներում,—արյունալի վոճիրների այս ամբողջ շղթան կազմակերպում են կապիտալիստական պետությունները:*

*Պայքարը վոչ մի րոպե չի դադարում, այդ պայքարը մղվում է բաց և քողարկված, բացահայտ և դիմակավորված: Դա յերկու սիստեմների՝ կապիտալիստական սիստեմի և սոցիալիստական սիստեմի պայքարն է:*

*Համաշխարհային տնտեսական ճգնաժամը, վոր հիմն ի վեր ցնցեց կապիտալիստական աշխարհը, ե՛լ*



*ավելի սրեց կապիտալիզմի բոլոր հակասությունները:*

*Կապիտալիզմն ավելի ու ավելի ուժեղացվող հակասություններից յելք է փնտռում պատերազմի մեջ, նոր համաշխարհային սպանդանոց կազմակերպելու մեջ:*

*Կապիտալիստական բոլոր յերկրներն ել տենդորեն պատրաստվում են զինված գոտեմարտի՝ արդեն վերաբաժանված աշխարհն իմպերիալիստական նոր վերաբաժանման յենթարկելու համար: Առանձնապես ագրեսիվ քաղաքականություն են վարում ֆաշիստական պետությունները:*

Գերմանական ֆաշիզմը *հանդես է գալիս վորպես նոր իմպերիալիստական պատերազմի կազմակերպիչն ու հրձիգը:*

*Համաշխարհային իմպերիալիստական պատերազմի հրդեհի մի այլ աղբյուր է հանդիսանում ճապոնական ֆաշիզմի ագրեսիան Հեռավոր Արևելքում:*

*Ընկեր Ստալինը մատնանշել է՝*

«...Պատերազմի վտանգի յերկու ոջախ կա: Առաջին ոջախը գտնվում է Հեռավոր Արևելքում, Ճապոնիայի գոտում: Յես աչքի առաջ ունեմ ճապոնական զինվորականների բազմիցս արած հայտարարությունները՝ մյուս պետությունների հասցեյին ուղղված սպառնալիքներով: Յերկրորդ ոջախը գտնվում է Գերմանիայի գոտում: Դժվար է ասել, թե վո՛ր ոջախն ավելի սպառնալից է, բայց դրանք յերկուսն ել գոյություն ունեն և գործում են»:

*Ընկեր Ստալինը բացատրեց ժամանակակից պատերազմի վտանգի հիմնական պատճառը՝*

«Կան կապիտալիստական պետություններ, վորոնք իրենց զրկված են համարում ազդեցության սֆերաների, տերիտորիաների, հումքի

աղբյուրների, շուկաների և այլնի նախորդ բաժանման ժամանակ, և վորոնք կուզեյին կրկին վերաբաժանել դրանք՝ հօգուտ իրենց: Կապիտալիզմն իր իմպերիալիստական փուլում այնպիսի մի սիստեմ է, վորը պատերազմն օրինական մեթոդ է համարում միջազգային հակասությունները լուծելու համար»:

Ճապոնիայի պատերազմը Չինաստանի դեմ—դա ճապոնական իմպերիալիզմի մի փորձ է՝ լուծելու իր ներքին հակասությունները, զենքի ուժով հափշտակելով հսկայական տերիտորիաներ և ստրկացնելով դարձյալ մի քանի տասնյակ միլիոն աշխատավորներ:

Ռազմական տեխնիկական տեսակետից թույլ Հաբեշստանի գրավումը Ֆաշիստական Իտալիայի կողմից, իտալական ֆաշիզմի մի փորձն է՝ զենքի ուժով լուծելու իր ներքին բարդ հակասությունները:

Ֆաշիստական պետությունների թիկունքի անկայունությունը նրանց մղում է ռազմական ավանտյուրաների:

Հիտլերի և Գեբելսի ռազմաշունչ հիստերիկան, նրանց բարձրաձայն արկածախնդրական յերազները, աշխարհը բանի կերպով վերաբաժանելու մասին, ցույց են տալիս ֆաշիստական ռեժիմի ներքին թուլությունը:

Ֆաշիստական յերկրների գնալով վատացող ներքին դրությունը նրանց դրդում է ժամանակավոր համաձայնություն կնքել միմյանց հետ, չնայած նրանց բաժանող խոշոր հակասություններին:

Այսպես, Գերմանիան և Իտալիան համագործակցություն են հաստատել հանրապետական Իսպանիայի վրա հարձակվելու գործում:

Գերմանո–իտալական զորքերը, առանց վորևե առիթի, առանց պատերազմ հայտարարելու, ներխու–



ժեցին Իսպանիա, վորպեսզի օժանդակություն ցույց տան հակահեղափոխական խռովարարներին՝ իսպանական հերոսական ժողովրդի դեմ:

Իսպանական հերոս բանվորներն ու գյուղացիները պայքար են մղում վոչ միայն իրենց «հայրենի» դասակարգային թշնամու, այլև միջազգային բուրժուազիայի դեմ:

Ընկեր Ստալինն Իսպանիայի Կոմկուսի Կենտկոմի քարտուղար ընկեր Խոսե Դիասի անունով իր ուղարկած պատասխան հեռագրում չեշտել է, թե՝

«...Իսպանիայի ազատագրումը ֆաշիստ ՌԵԱԿՑԻՈՆԵՐՆԵՐԻ ՃՆՇՈՒՄԻՑ, իսպանացիների մասնավոր գործը չէ, այլ ամբողջ առաջավոր ու առաջադեմ մարդկության ընդհանուր գործն է»:

Կապիտալիստական այն յերկրները, վորտեղ դեռ պահպանվել են բուրժուական պարլամենտարիզմի մնացորդները, այն յերկրները, վորոնք 1914—1918 թ. թ. պատերազմում հաղթանակ եյին տարել, ռազմական արկածախնդրությունների դիմելու մեծ ցանկություն չեն ցուցաբերում, նրանք վորոշ չափով ցանկություն են հայտնում համագործակցելու Խորհրդային Միության հետ՝ խաղաղության պահպանելու գործում:

Բայց նրանց «չեզոքության» ամբողջ քաղաքականությունը ֆաշիստական յերկրների վերաբերմամբ և մասնավորապես Անգլիայի ու Ֆրանսիայի տիրապետող դասակարգերի՝ Իսպանիայի գործին «չմիջամտելու» կեղծավոր քաղաքականությունը թուլացնում է խաղաղության պաշտպանության գործն ամբողջ աշխարհում և նպաստում է պատերազմի ուժերի արձակմանը:

Ֆաշիստական կառավարությունների հափշտակո–

դական քաղաքականության սուր ծայրն ուղղված է ԽՍՀՄ-ի դեմ։

Ֆաշիզմը բանվոր դասակարգի ամենակատաղի թշնամին է։

Ֆաշիզմն արյունալի տեռոր է բանվորների դեմ, նրա հեղափոխական ավանգարդի՝ կոմունիստների դեմ։

Ֆաշիստական կառավարությունները մոլեգին ատելությամբ են համակված ընդդեմ Խորհուրդների յերկրի՝ բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետության։

Ֆաշիստական ագրեսորները բազմիցս պրովոկացիայի յեն յենթարկել Խորհրդային Միությունը, ստեղծելով պատերազմ սպառնացող կոնֆլիկտներ։

Կապիտալիզմի հակասությունների սրումը և սոցիալիստական շինարարության հաջողություններն ուժեղացնում են բուրժուական աշխարհի ագրեսիվությունն ընդդեմ Խորհրդային յերկրի։

Լայնորեն ծավալված է ֆաշիստական հետախուզության աշխատանքը, վորը հանդիսանում է իմպերիալիստական պատերազմի նախապատրաստման պլանի բաղկացուցիչ մասը։

Տրոցկիստական բանդիտներն ու աջ ռեստավրատորներն ուղղակի գյուտ հանդիսացան ոտարերկրյա պետությունների հետախուզական աշխատանքի համար։

Հակախորհրդային տրոցկիստական-զինովյեվական կենտրոնի դատավարությունը 1936 թվականին և Պյատակովի—Ռադեկի—Սոկոլնիկովի խմբի դատավարությունն այս տարվա սկզբին, բացահայտեցին այն վնասարարական աշխատանքի ամբողջ զզվելի պատկերը, վորը կազմակերպել էր ֆաշիզմի տրոցկիստական գործակալությունը՝ արդյունաբերության ու



տրանսպորտի ասպարեզում։ Պայթեցումներ գործարաններում ու հանքերում, ավարիաներ էլեկտրակայաններում, գնացքների խորտակումներ, բանվորների ու կարմիր բանակայինների ֆիզիքական վոչնչացում, շպիոնաժ—ահա Գեստապոյի տրոցկիստական գործակալների արյունոտ գործերի վոչ լրիվ պատկերը։

Ֆաշիզմի գործակալների քայքայիչ աշխատանքի պլանը կառուցվում եր այն հաշվով, վորպեսզի ամենալուրջ հարված հասցվի մեր արդյունաբերությանն ու տրանսպորտին, պատերազմի առաջին իսկ որերին, չփոթություն ստեղծվեր խորհրդային պետության ռազմապաշտպանական գործունեյության մեջ։

«...Քանի գոյություն ունի կապիտալիստական շրջապատումը,—ասում եր ընկեր Ստալինը Համ. Կ(բ)Կ Կենտկոմի Մարտյան Պլենումում, — մեզ մոտ կլինեն վնասարարներ, լրտեսներ, դիվերսանտներ ու մարդասպաններ, վորոնց մեր թիկունքներն են ուղարկում ոտարերկրյա պետությունների գործակալները»։

Խորհրդային Միության խաղաղասիրական քաղաքականությունը, խաղաղության գործի հետևողական պաշտպանումը՝ մեկ կողմից, և խորհրդային պետության ռազմական հզորության աճումը, նրա պաշտպանունակության աճումը՝ մյուս կողմից, խանգարում են ագրեսորներին՝ անհապաղ իրագործելու իրենց հափշտակողական լայն պլանները։

Հակաֆաշիստական շարժման աճն ամբողջ աշխարհում, բոլոր հակաֆաշիստական ուժերի և հոսանքների հավաքումն ու համախմբումը նույնպես խոշոր հարված է ֆաշիզմի արյունալի պլաններին։

Միասնական ճակատի տակտիկան, վորը հաջողությամբ գործադրվում է Ֆրանսիայում և Իսպանիայում, դեպի հակաֆաշիստական բանակն է գրավում

կապիտալիստական յերկրների բոլոր դեմոկրատիկ տարրերին, աշխատավորության բոլոր ազատամիտ խմբերին:

Ներկա միջազգային իրադրությունը, պրոլետարական հեղափոխությունների և իմպերիալիստական պատերազմների յերրորդ փուլի շրջանը, այդ փաստորեն նախապատերազմական կացությունը,—հանգում են հեղափոխության ուժերի և ռեակցիայի ուժերի գնալով ավելի վորոշակի սահմանազծմանն ամբողջ աշխարհում:

Սոցիալիզմը և կապիտալիզմը՝ յերկու հակադիր սիստեմներ, կանգնած են իրար դեմ առ դեմ:

Իմպերիալիզմն ամբողջովին մերկացրեց իրեն ծվատող հակասությունները, ցույց տալով իր անբուժելի խոցերի ամբողջ զզվելի պատկերը:

Խորհրդային յերկիրը, վորը վոչնչացրել է մարդու շահագործումը մարդու կողմից, վերացրել է գործազրկությունը, վորը ճգնաժամեր չգիտե, ամբողջ աշխարհին ցուցադրում է սոցիալիստական հասարակարգի առավելությունները:

Խորհրդային Միությունը բարձրանում է կապիտալիզմի ալեհույզ ծովում, վորպես մի անառիկ ժայռ, վորպես մի հուսալի փարոս, ամրակուռ հենարան՝ այն պայքարում, վորը մղում են ճնշվածները կապիտալիստական յերկրների դեմ՝ իրենց ազատագրման համար:

Խորհրդային Միությունը հանդիսանում է իրոք ազատ մարդու խաղաղ աշխատանքի յերկիր:

Վորպես խորհրդային մարդկանց խաղաղ աշխատանքի պահապան, կանգնած է մեր հզոր, անհաղթ Կարմիր Բանակը:

Մեծ Ստալինի ղեկավարությամբ, Խորհրդային Միության առաջին մարշալ Կլիմ Վորոշիլովն ամրա-



պնդում է մեր պանծալի բանվորագյուղացիական Կարմիր Բանակի զորությունը:

Մենք աշխատանքի մարդիկ ենք, մեր յերկիրը խաղաղության յերկիր է, սակայն մենք պատրաստ ենք կրծքով պաշտպանելու մեր սիրելի հայրենիքը թշնամիների հարձակումներից (բուռն ծափեր):

Խորհրդային մարդիկ անսասան պարսպի պես պաշտպան կկանգնեն իրենց մեծ հայրենիքին և անխնա կհարվածեն թշնամուն՝ նրա սեփական տերիտորիայում:

Կապիտալիզմը չի հաղթի սոցիալիզմին:

Սոցիալիզմն անպարտելի յե այն պատճառով, վոր այն կառուցում ու պաշտպանում են Լենինի և Ստալինի անհաղթ կուսակցության կողմից կոփված մարդիկ:

Մեր յերկիրն անպարտելի յե այն պատճառով, վոր նրա աշխատանքն ու պայքարը ղեկավարում է մեր դարաշրջանի ամենամեծագույն մարդը՝ ընկեր Ստալինը, վորը չգիտե յերկյուղ ու պարտություն (բուռն, յերկարատև ծափեր, պատգամավորները հոտնկայս բուռն ովացիա յեն սարքում ի պատիվ մեծ Ստալինի):

***

Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության 9-րդ համագումարից անցել է 3 տարուց քիչ ավելի: Այդ ժամանակամիջոցում մեծագույն փոփոխություններ կատարվեցին ԽՍՀՄ-ի ժողովուրդների և մեր սոցիալիստական պետության կյանքում, մեր կուսակցության կյանքում: Այդ մի ժամանակաշրջան եր, վորն առանձնապես հարուստ եր յերկրի քաղաքական ու տնտեսական կյանքում մեծագույն նշանակություն ունեցող իրադարձություններով:

Հատկապես այդ տարիների ընթացքում վիթխարի

աշխատանք ծավալվեց ժողովրդական տնտեսության զարգացման 2-րդ հնգամյա պլանի կատարման ուղղությամբ:

Խորհրդային Միության արդյունաբերությունն արտադրանքի հնգամյա պլանը կատարեց առ մեկն ապրիլի 1937 թ., այսինքն՝ ժամկետից 9 ամիս շուտ:

Յերկաթուղային տրանսպորտը փոխադրումների յերկրորդ հնգամյա պլանն առ 1-ն հունվարի 1937 թ. գերակատարեց 7,7 տոկոսով:

Խորհրդային Միության ծանր արդյունաբերությունը 1936 թվականին տվեց արտադրանքի աճ 28,4 տոկոսով: Պետք է նշել՝ զարգացման այսպիսի տեմպ յերբեք չի տեսել կապիտալիստական և ոչ մի յերկիր:

Խորհրդային Միությունը վերածվեց հզոր ինդուստրիալ յերկրի:

Այժմ արդեն Խորհրդային Միությունն արդյունաբերական արտադրանքի ծավալով առաջին տեղն է գրավել ամբողջ աշխարհում:

Խորհրդային Միությունն առաջին տեղն է գրավում նաև գյուղատնտեսական արտադրանքի ծավալով:

Յերկրի ինդուստրացման ստալինյան քաղաքականությունը նախապատրաստեց 1935 թվականին սկսված ստախանովյան շարժման լայն ծավալումը:

Ստախանովյան շարժումը սոցիալիստական մրցության բարձրագույն ետապն է:

Ստախանովյան շարժումը նշանակում է աշխատանքի արտադրողականության հսկայական վերելք:

Ծանր արդյունաբերության ժողկոմատի արդյունաբերության գծով աշխատանքի արտադրողականությունը 1936 թվականին աճեց 25,5 տոկոսով:

Ստախանովյան շարժումը «ծնունդ առավ և ծավալվեց վորպես ներքեվից յեկող շարժում» (ՍՏԱԼԻՆ):

Այդ շարժումը կյանքի յե կոչված նոր, բարձր



տեխնիկական բազայի գոյությամբ:

Այդ շարժումը հրապարակ հանեց տեխնիկային տիրապետած բանվորների և բանվորուհիների նոր կադրեր:

Գյուղատնտեսությունը բնութագրվում է բոլոր ճյուղերի, այդ թվում նաև անասնապահության արագ վերելքով, վորն առաջ հետ մնացող ճակատամաս եր հանդիսանում:

Ներկայումս կոլտնտեսություններում համախմբված են 19 միլիոն գյուղացիական տնտեսություն, այսինքն բոլոր տնտեսությունների 92 տոկոսը: Կոլտնտեսությունների ձեռքումն է գտնվում ցանքերի ամբողջ տարածության 98,2 տոկոսը:

Սոցիալիստական գյուղատնտեսությունը ներկայացնում է «աշխարհիս ամենախոշոր մեքենայացված, նոր տեխնիկայով զինված մի արտադրություն՝ կոլտնտեսությունների և խորհտնտեսությունների համայնապարփակ սիստեմի ձևով» (Ի. ՍՏԱԼԻՆ «ԽՍՀ Միության Սահմանադրության նախագծի մասին»):

Գյուղատնտեսությունն այդ վիթխարի հաջողություններին հասավ շնորհիվ գյուղատնտեսական արտելի ստալինյան կանոնադրության ճիշտ կիրառման ու կենսագործման, շնորհիվ այն բանի, վոր գյուղատնտեսական արտելը հանդիսացավ սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման հիմնական ձևը:

Ավելի ու ավելի ծավալվող ստախանովյան շարժման հիման վրա աճել է նաև գյուղատնտեսությունը:

Գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությունը կուսակցության ու կառավարության ղեկավարների հետ ակնառու կերպով ցույց տվեց, վոր կոլտնտեսային գյուղն ունի գյուղատնտեսական արտադրությունը կուլտուրապես վարելու հմուտ կադրեր:

Առաջնորդի աշխարհում մեկ հնչած այն խոսքերը թե՝ «Ընկերնե՛ր, կյանքն ավելի լավ է դարձել, կյանքն ավելի ուրախ է դարձել», ամփոփեցին այն հերոսական պայքարի արդյունքները, վորը մղել են ԽՍՀՄ-ի բանվոր դասակարգը և կոլտնտեսականներն ունևոր, բարեկեցիկ կյանքի համար:

Ընկեր Ստալինը Խորհուրդների Համամիութենական արտակարգ 8-րդ համագումարում ասել է՝

«...Սոցիալիստական սիստեմի լիակատար հաղթանակը ժողովրդական տնտեսության բոլոր վոլորտներում այժմ փաստ է»:

Համաշխարհային պատմական նշանակություն ունեցող այդ վճռական հաղթանակները նվաճվել են տրոցկիստ — յերկերեսանիների և նրանց աջ դաշնակիցների դեմ մղվող անհաշտ պայքարում:

Կուսակցության հիմնական գիծը՝ յերկրի ինդուստրացումը և գյուղատնտեսության կոլեկտիվացումն անց է կացվել տրոցկիստական և աջ դավաճանների կատաղի դիմադրության պայմաններում:

Սոցիալիզմի գործի համար կուսակցության մղած պայքարը ղեկավարել ու ղեկավարում է մեծ Ստալինը: Կուսակցությունը բոլշևիկյան պայքար ծավալեց առաջնորդի բոլոր ցուցումների անշեղ կատարման համար (բուռն ծափահարություններ):

Հաշվետու շրջանում խորհրդային իշխանության ամենաթանկագին նվաճումը, կուսակցության խոշորագույն հաղթանակն են հանդիսանում՝ արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի աշխատողների նոր կադրերը, սոցիալիստական շինարարության բոլոր ասպարեզների նոր կադրերը, տասնյակ հազարավոր նոր մարդիկ, բանվորներ, բանվորուհիներ, կոլտնտեսականներ ու կոլտնտեսուհիներ, վորոնք աճել են խորհրդային իշխանության տարի—



ներին և հաջողությամբ առաջ են մղում արտադրությունը, տեխնիկան, գիտությունը, կուլտուրան: Հենց նրանց, մեր նոր մարդկանց նկատի ուներ ընկեր Ստալինը, յերբ մեզ սովորեցնում եր, ասելով՝

«Պետք է, վերջապես հասկանալ, վոր աշխարհում գոյություն ունեցող բոլոր արժեքավոր կապիտալներից ամենաարժեքավոր ու ամենավճռական կապիտալը մարդիկ են, կադրերը: Պետք է հասկանալ, վոր մեր ներկա պայմաններում կադրերը վորոշում են ամեն ինչ: Յեթե մեզ մոտ լավ ու բազմաթիվ կադրեր լինեն արդյունաբերության մեջ, գյուղատնտեսության մեջ, տրանսպորտում, բանակում — մեր յերկիրն անպարտելի կլինի»:

Մեծ Ստալինի ղեկավարությամբ կուսակցությունը կարողացավ դաստիարակել, առաջ քաշել նոր, գրագետ, հաստատակամ, առաջացած մարդկանց հոծ մասսաներ:

Կուսակցությունը բանվորների, կոլտնտեսականների, աշխատավորների միլիոնավոր մասսաներին ներգրավելով սոցիալիստական շինարարության մեջ, կարողացավ պատվով լուծել իր առջև ծառացած բոլոր կարևորագույն տնտեսական ու քաղաքական խնդիրները: Ահա թե ինչու մեր մեծ սոցիալիստական հայրենիքն անպարտելի յե (բուռն ծափեր):

***

Համաշխարհային-պատմական մեծագույն նշանակություն ունեցող անցք հանդիսացավ Խորհրդային Միության նոր ստալինյան Սահմանադրությունը:

Նոր Սահմանադրությունը, վորը մշակվեց մեր առաջնորդի անմիջական ղեկավարությամբ և ընդունվեց Խորհուրդների Համամիութենական արտակարգ 8-րդ համագումարում, ամենանշանավոր փաստաթուղթն է,

վորը Հոյակապ կերպով վեր է բարձրանում այն բոլորից, ինչ վոր ստեղծել է մարդկությունն այդ ասպարեզում՝ պայքար մղելով իր իրավունքների համար, աշխատանքի իրավունքի համար, ազատ, չքեղ, ջանիկ կյանքի համար։

Ընդունելով ստալինյան Սահմանադրությունը, Խորհրդային Հայաստանը մյուս տասը միութենական հանրապետությունների հետ միասին դարձավ անմիջականորեն ԽՍՀՄ-ի մեջ մտնող միութենական հանրապետություն։

Խորհրդային Հայաստանի միութենական հանրապետություն դառնալը մի անգամ ևս հաստատեց առաջնորդի այն ցուցման ճշտությունը, վոր արել է նա Հայաստանում խորհրդային իշխանության հաստատվելու կապակցությամբ՝

«Միայն խորհրդային իշխանությանն գաղափարը խաղաղություն և ազգային վերածնության հնարավորություն բերեց Հայաստանին... Թող՝ ում վոր հարկն է գիտենա, վոր այսպես կոչված հայկական «պրոբլեմը», վորի վրա զուր գլուխ են ջարդել իմպերիալիստական դիվանագիտության հին գայլերը, կարողացավ լուծել միմիայն խորհրդային իշխանությունը»։

Խորհրդային Հայաստանը յեղբայրական Վրաստանի ու Ադրբեջանի հանրապետությունների հետ միասին 15 տարվա ընթացքում աճել ու ամրապնդվել է Անդրկովկասյան Ֆեդերացիայի սիստեմում։

Անդրկովկասյան Ֆեդերացիան հսկայական նշանակություն ունեցավ Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի տնտեսական ու կուլտուրական շինարարության գործի համար։

«Անդրկովկասյան Ֆեդերացիան,— ասել է ընկ. Բերիան Վրաստանի կոմունիստական կու-





սակցության X համագումարում,— վոր ստեղծվել էր 15 տարի սրանից առաջ Լենինի ու Ստալինի կողմից՝ նրանց համատեղ առաջարկությամբ, պատմական դեր խաղաց բազմազգ Անդրկովկասի աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության գործում, տեղական ու մեծապետական շովինիզմի մերկացման գործում, դասակարգայնորեն թշնամի, հակահեղափոխական, նացիոնալ-ուկլոնիստական տարրերի դեմ պայքարելու գործում, տարրեր, վորոնք սկզբից հենց հանդես եյին գալիս վորպես հակահեղափոխական տրոցկիզմ-մենշևիզմի գործակալություն»։

Անդրկովկասյան Ֆեդերացիան ամրապնդեց իր մեջ մտնող ազգային հանրապետությունների տնտեսական ու քաղաքական հզորությունը, հաստատեց Անդրկովկասի ժողովուրդների անքակտելի բարեկամությունը,

Անդրկովկասյան Ֆեդերացիան լրիվ իրագործեց իր առջև դրված խնդիրները, ուստի, Հայաստանի Վրաստանի ու Ադրբեջանի Խորհուրդների վերջերս տեղի ունեցած համագումարները քննարկելով նոր Սահմանադրության նախագծերը՝ միահամուռ կերպով վորոշում ընդունեցին Անդրֆեդերացիան լիկվիդացիայի յենթարկելու և Անդրկովկասի հանրապետությունների՝ անմիջականորեն ԽՍՀՄ-ի կազմի մեջ մուտք գործելու մասին։

Հայաստանը, Վրաստանը և Ադրբեջանը դառնալով Միութենական հանրապետություններ՝ այսուհետև ևս ավելի մեծ թափով կամրապնդեն Անդրկովկասի և ամբողջ Խորհրդային Միության ժողովուրդների ստալինյան բարեկամությունը, լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության այդ ամենաթանկագին արդյունքը (...հարություններ)։





# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԸ

Հաշվետու շրջանում, այսինքն՝ 1934—36 թ. թ. ընթացքում, Հայաստանի ժողովրդական տնտեսության վերելքը նոր, ավելի լայն թափ ու ծավալ ստացավ:

Կառուցվեցին մի շարք նոր ձեռնարկություններ: Արդյունաբերությունն սկսեց արտադրել ապրանքների նոր տեսակներ:

Հիմնականում ավարտվեց Քանաքեռի հիդրոէլեկտրակայանի շինարարությունը: Յերևանում կառուցվում է Միության մեջ խոշորագույն Սինթետիկ Կաուչուկի կոմբինատը:

Շոշափելի աշխատանք է կատարված Հանրապետության բնական հարստությունները յերևան բերելու ուղղությամբ:

Մխմխայն Փիրդոուդանի պղինձ-մոլիբդենի հանքավայրում պղնձի պաշարը հաշվվում է 1.500 հազար տոնն, չհաշված մոլիբդենի խոշոր պաշարը:

Հիմք դրվեց քիմիական արդյունաբերության բուռն զարգացմանը: Մեծ չափով աճեց սննդի ու թեթև արդյունաբերությունը: Ավարտվում է տեքստիլ կոմբինատի վերակառուցումը: Շահագործման հանձնվեց Լենինականի մսի կոմբինատը: Այս տարիների



ընթացքում շատ աշխատանք կատարվեց Յերևան քաղաքում. միայն 1937 թ. մենք մոտավորապես 60 միլիոն ռուբլի պետք է ներդրենք քաղաքի տնտեսությունը բարեկարգելու համար: Քիչ աշխատանք չի կատարված նաև մեր շրջանային կենտրոնների բարեկարգման ու շինարարության զարգացման համար:

Հաշվետու տարիների ընթացքում ժողովրդական տնտեսության մեջ ներդրվեց ավելի քան 600 միլիոն ռուբլի: Կոլտնտեսություններն ընդգրկում են գյուղացիական տնտեսությունների 88,9 տոկոսը՝ 1934 թ. 37,0 տոկոսի փոխարեն: Կոլտնտեսությունների յեկամուտը յերեք տարվա ընթացքում կրկնապատկվեց: Յուրաքանչյուր կոլտնտեսության յեկամուտը միջին հաշվով 1934 թ. 136 հազար ռուբլուց 1936 թ. հասավ 334 հազար ռուբլու:

Մեքենատրակտորային կայանների տրակտորային պարկը յեռապատկվեց՝ հասնելով 1183 տրակտորի, 1934 թ. 409 տրակտորի փոխարեն: Կոմբայնների պարկն ունի 135 մեքենա, 1934 թ. 8 մեքենայի դիմաց:

Ժողովրդական տնտեսության վերելքին ուղեկցում է աշխատավոր լայն մասսաների բարեկեցության աճումը, քաղաքի և գյուղի աշխատավորների ունևորության աճումը: Անցյալ յերեք տարվա ընթացքում ամբողջ ժողովրդական տնտեսության անշեղ աճման պայմաններում առանձնապես աչքի յե ընկնում մեր արդյունաբերության աճումը:

## ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆ

Հաշվետու շրջանում մեր արդյունաբերությունն աճել է համարյա յերկու անգամ: Արդյունաբերու-

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԸ

*Հաշվետու շրջանում, այսինքն՝* 1934—36 *թ. թ. ընթացքում, Հայաստանի ժողովրդական տնտեսության վերելքը նոր, ավելի լայն թափ ու ծավալ ստացավ:*

*Կառուցվեցին մի շարք նոր ձեռնարկություններ: Արդյունաբերությունն սկսեց արտադրել ապրանքների նոր տեսակներ:*

*Հիմնականում ավարտվեց Քանաքեռի հիդրոէլեկտրակայանի շինարարությունը: Յերևանում կառուցվում է Միության մեջ խոշորագույն Սինթետիկ Կաուչուկի կոմբինատը:*

*Շոշափելի աշխատանք է կատարված հանրապետության բնական հարստությունները յերևան բերելու ուղղությամբ:*

*Միայն Փիրդուդանի պղինձ-մոլիբդենի հանքավայրում պղնձի պաշարը հաշվվում է* 1·500 *հազար տոնն, չհաշված մոլիբդենի խոշոր պաշարը:*

*Հիմք դրվեց քիմիական արդյունաբերության բուռն զարգացմանը: Մեծ չափով աճեց սննդի ու թեթև արդյունաբերությունը: Ավարտվում է տեքստիլ կոմբինատի վերակառուցումը: Շահագործման հանձնվեց Լենինականի մսի կոմբինատը: Այս տարիների*



*ընթացքում շատ աշխատանք կատարվեց Յերևան քաղաքում. միայն* 1937 *թ. մենք մոտավորապես* 60 *միլիոն ռուբլի պետք է ներդրենք քաղաքի տնտեսությունը բարեկարգելու համար: Քիչ աշխատանք չի կատարված նաև մեր շրջանային կենտրոնների բարեկարգման ու շինարարության զարգացման համար: Հաշվետու տարիների ընթացքում ժողովրդական տնտեսության մեջ ներդրվեց ավելի քան* 600 *միլիոն ռուբլի: Կոլտնտեսություններն ընդգրկում են գյուղացիական տնտեսությունների* 88,9 *տոկոսը՝* 1934 *թ.* 37,0 *տոկոսի փոխարեն: Կոլտնտեսությունների յեկամուտը յերեք տարվա ընթացքում կրկնապատկվեց: Յուրաքանչյուր կոլտնտեսության յեկամուտը միջին հաշվով* 1934 *թ.* 136 *հազար ռուբլուց* 1936 *թ. հասավ* 334 *հազար ռուբլու:*

*Մեքենատրակտորային կայանների տրակտորային պարկը յեռապատկվեց՝ հասնելով* 1183 *տրակտորի,* 1934 *թ.* 409 *տրակտորի փոխարեն: Կոմբայնների պարկն ունի* 135 *մեքենա,* 1934 *թ.* 8 *մեքենայի դիմաց:*

*Ժողովրդական տնտեսության վերելքին ուղեկցում է աշխատավոր լայն մասսաների բարեկեցության աճումը, քաղաքի և գյուղի աշխատավորների ունևորության աճումը: Անցյալ յերեք տարվա ընթացքում ամբողջ ժողովրդական տնտեսության անշեղ աճման պայմաններում առանձնապես աչքի յե ընկնում մեր արդյունաբերության աճումը:*

## ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆ

*Հաշվետու շրջանում մեր արդյունաբերությունն աճել է համարյա յերկու անգամ: Արդյունաբերու-*

թյան արտադրանքը 1936 թվին կազմում է 1933 թվի արտադրանքի 182 տոկոսը, իսկ 1919 թվի հետ համեմատած մեր արդյունաբերության արտադրանքն աճել է ավելի քան 128 անգամ։

### ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԱՐՏԱԴՐԱՆՔԸ

(1926—27 թ. թ. անփոփոխ գներով)

Ընդհանուր արտադրանքը հազար ռուբլով

| 1919 | 1927/28 | 1932 | 1933 | 1934 | 1935 | 1936 |
|---|---|---|---|---|---|---|
| 1668 | 22·263 | 87·877 | 118853 | 140732 | 171257 | 216418 |

Արդյունաբերության արագ աճման հետևանքը յեղավ այն, որ ժողովրդական տնտեսության ընդհանուր արտադրանքի մեջ արդյունաբերության տեսակարար կշիռն աճում է տարեց-տարի և գերիշխող դիրք է գրավում։

### ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՏԵՍԱԿԱՐԱՐ ԿՇԻՌԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԱՐՏԱԴՐԱՆՔՈՒՄ

(1926–27 թ. թ. գներով)

| | 1919 թ. | 27/28 թ. | 1932 թ. | 1933 թ. | 1934 թ. | 1935 թ. | 1936 թ. |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1. Արդյունաբերութ. | 10 | 21.6 | 57 2 | 62,3 | 64 | 66,5 | 69.2 |
| 2. Գյուղատնտեսութ. | 90 | 78,4 | 42,8 | 37,7 | 36 | 33,5 | 30,8 |
| Ընդամենը . . . | 100 | 100 | 100 | 100 | 100 | 100 | 100 |

Այսպիսով, ամբողջ ժողովրդական տնտեսության արտադրանքի անշեղ ու արագ աճման պայմաններում, արդյունաբերության արտադրանքը շատ ավելի արագ է աճում և նրա տեսակարար կշիռը մոտ



յերկու և կես անգամ ավելի բարձր է գյուղատնտեսության արտադրանքից։

Այսպես ուրեմն, Հայաստանը հետամնաց ագրարային մի յերկրից, — որն անցյալում ուներ արդյունաբերության միայն աննշան, կիսատնայնագործական ու տնայնագործական ոջախներ, — մեծ ռուս ժողովրդի աջակցությամբ, վրաստանի ու Ադրբեջանի յեղբայրական ժողովուրդների ոգնությամբ, կարճ ժամանակամիջոցում բոլշևիկյան կուսակցության կամքով դարձավ ինդուստրիալ-ագրարային առաջավոր հանրապետություն՝ Խորհրդային մեծ Միության անբաժան մասնիկը։

Յեթե դիտենք արդյունաբերության աճումն ըստ առանձին ճյուղերի, ապա կստանանք հետևյալ պատկերը.—

### ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ՃՅՈՒՂԵՐԻ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՏԵՍԱԿԱՐԱՐ ԿՇԻՌՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԺՈՂԿՈՄԱՏՆԵՐԻ, ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՄԵՋ

| | 1933 թ. | 1934 թ. | 1935 թ. | 1936 թ. | 1937 թ. |
|---|---|---|---|---|---|
| Ամբողջ արդյունաբերությունը | 100,0 | 100,0 | 100,0 | 100,0 | 100,0 |
| Այդ թվում | | | | | |
| Պղնձի | 7,4 | 8,8 | 5,9 | 7,8 | 8.3 |
| Քիմիական | 3,2 | 6,6 | 8,5 | 8,6 | 15,8 |
| Շինանյութերի | 5,9 | 6,9 | 7,9 | 5,2 | 5,9 |
| Թեթև | 31,5 | 27,0 | 24,6 | 25,9 | 19.2 |
| Սննդի | 41,9 | 39,6 | 41,2 | 41,4 | 40,0 |
| Այլ ճյուղեր | 10,1 | 11,1 | 11,9 | 11,1 | 10,8 |

Ինչպես ցույց են տալիս մեր բերած տվյալները, արդյունաբերության կառուցվածքում փոփոխությունները տեղի յեն ունենում հոգուտ քիմիական արդյունաբերության: Իսկ յեթե հաշվի առնենք այն հըսկայական ներդրումները, վոր այս տարիների ընթացքում կատարվել են քիմ. արդյունաբերության մեջ — Կաուչուկի կոմբինատ, Կիրովականի գործարանը, Ալավերդու ծծմբաթթվի գործարանը, Յերևանի քիմ. կոմբինատը, վորոնք հիմնականում պետք է շահագործման հանձնվեն ընթացիկ տարվա վերջերին — յեթե հաշվի առնենք պղնձարդյունաբերության զարգացման հսկայական հեռանկարները և մոլիբդենի ամենահարուստ հանքավայրերի շահագործումը, ապա արդյունաբերության կառուցվածքն առաջիկա մեկ-յերկու տարում մեծ չափով կփոխվի:

Քիմիական ու լեռնահանքային արդյունաբերության տեսակարար կշիռը շատ անգամ կգերազանցի ամբողջ մնացած արդյունաբերության տեսակարար կշռին:

Այսպիսով, Հայաստանն արդեն այսոր հանդես է գալիս վորպես ինդուստրիալ-ագրարային հանրապետություն, վորտեղ գերակշռում է քիմիական և լեռնահանքային արդյունաբերությունը:

## ԵՆԵՐԳԵՏԻԿԱ

Արդյունաբերության բուռն աճումը, քիմիական ձեռնարկությունների շինարարությունը, մեծ չափով ելեկտրոեներգիա պահանջող արտադրության զարգացումը պայմանավորված են ելեկտրակայանների շի-



նարարության ծավալմամբ և գոյություն ունեցող կայանների եներգիայի արտադրանքի ավելացմամբ: Մենք ունենք մեր արդյունաբերության զարգացման համար խոշոր նշանակություն ունեցող մի հիդրոելեկտրակայան. դա Քանաքեռի ելեկտրակայանն է: Այս կայանը Միության լավագույն հիդրոելեկտրակայաններից մեկն է: Այս կայանի շինարարության պետն է շքանշանակիր ընկեր Տեր-Աստվածատրյանը, վորն իր գործին գիտակ ականավոր մասնագետ է: Նրա աշխատանքը, իր կուռ կոլեկտիվի հետ միասին, գրավական է հանդիսանում այն բանի, վոր Սևան-Զանգու հիդրոկայանների աշխատանքները հաջողությամբ կկատարվեն և Խորհրդային Հայաստանի հիդրոելեկտրաշինարարությունը՝ ժողովրդական հսկայական տնտեսության այդ հիմքը կապահովվի:

## ԵԼԵԿՏՐՈԵՆԵՐԳԻԱՅԻ ԱՐՏԱԴՐԱՆՔԸ ՅԵՎ ԵԼԵԿՏՐԱԿԱՅԱՆՆԵՐԻ ԿԱՐՈՂՈՒԹՅՈՒՆԸ

| | 1933 թ. | 1936 թ. |
|---|---|---|
| 1. Կայանների թիվը | 32 | 42 |
| 2. Նրանց կարողությունը 1000 կիլովատով | 31,1 | 66 |
| 3. Ելեկտրոեներգիայի արտադրությունը միլիոն կիլովատ ժամով | 77,99 | 156 |

Ինչպես տեսնում եք, ելեկտրակայանների կարողությունը և ելեկտրոեներգիայի արտադրումը յերեք տարում ավելի քան կրկնապատկվել է:

## ՀԻՄՆԱԿԱՆ ՆԵՐԴՐՈՒՄՆԵՐ

Անցյալ յերեք տարիները բնորոշվում են ժողովրդական տնտեսության մեջ ներդրված հիմնական գումարների զգալի ավելացմամբ: Այսպես՝ յերեք տարվա ընթացքում ժողովրդական տնտեսության մեջ

ներդրվել է 609,370,7 հազար ռուբլի, դրանից ըստ տարիների ներդրվել է 1934 թ.՝ 182,703,8 հազար ռուբլի, 1935 թ.՝ 203,335,1 հազար ռուբլի, 1936 թ.՝ 223,331,8 հազար ռուբլի, 1933 թվականի 133,493,9 ռուբլու փոխարեն:

Հիմնական ներդրումները հետևյալ ուղղությունն ունեցին.

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ՆԵՐԴՐՈՒՄՆԵՐԻ ՈՒՂՂՈՒԹՅՈՒՆԸ

(Հազար ռուբլիներով)

| Ճյուղեր | 1933 թ. | 1934 թ. | 1935 թ. | 1936 թ. |
|---|---|---|---|---|
| Ընդամենը ժողովրդ. տնտեսութ. մեջ | 133,493,9 | 182,703,8 | 203,335,1 | 223,331,8 |
| Այդ թվից | | | | |
| արդյունաբեր. և էներգետիկա | 59,933,7 | 86,237,6 | 117.606,1 | 127,502,2 |
| Այդ թվից | | | | |
| 1) էներգետիկա | 18,274,0 | 27,239,0 | 49,427,3 | 50,247,0 |
| 2) պղինձ | 5,573,3 | 6,240,0 | 6.594.7 | 4,193,7 |
| 3) քիմիական | 11,430.9 | 19,197,1 | 32,208,7 | 30,660,0 |
| 4) սննդի | 9 832.4 | 14,043,2 | 12,608,2 | 14,045,2 |
| 5) թեթև | 3,100,8 | 5,034,3 | 7,591,1 | 9,694,6 |

Ինչպես տեսնում ենք, մինչդեռ ժողովրդական տնտեսության հիմնական ներդրումները 1936 թվականին աճել են 67,2%-ով՝ 1933 թվականի հետ համեմատած, արդյունաբերության հիմնական ներդրումները 1936 թվին հասան 215%-ի 1933 թվականի հետ համեմատած:



Երեք տարվա ընթացքում ժողովրդական տնտեսության կատարված 609,370,7 հազար ռուբլու հիմնական ներդրումներից արդյունաբերության մեջ ներդրվել է 325,341,4 հազար ռուբլի, կամ բոլոր հիմնական ներդրումների 53,4%-ը տրվել է արդյունաբերական շինարարությանը, այս թվից էներգետիկ շինարարությանը՝ 126,913,3 հազար ռուբլի, քիմիական արդյունաբերությանը՝ 82,065,8 հազար ռուբլի:

Արդյունաբերական շինարարության այսպիսի արագացման շնորհիվ մենք ունենք արդյունաբերության հիմնական ֆոնդերի զգալի աճում, 1933 թվականի 104,615 հազար ռուբլուց այդ ֆոնդերը 1936 թվականին հասան 202,731 հազար ռուբլու, չհաշված մի շարք օբյեկտներ, ինչպես Կաուչուկի կոմբինատը, վորին հատկացվում է ավելի քան 150 միլիոն ռուբլի, Քանաքեռի հիդրոէլեկտրակայանը, ծծմբաթթվի գործարանը, Կիրովականի քիմիական գործարանի մի շարք ցեխերը, տեքստիլ կոմբինատի յերկրորդ հերթի շինարարությունը և մի շարք դեռ չավարտված ձեռնարկություններ, վորոնց շահագործումն ավելի քան կրկնապատկելու յե արդյունաբերության արտադրական ֆոնդերը:

## ՍՏԱԽԱՆՈՎՅԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ

Մեր արդյունաբերության մեջ ստախանովյան շարժման զարգացումը և այդ ասպարեզում թաքնված հնարավորությունները ցույց տալու համար բավական է բերել հետևյալ մի քանի տվյալները.

Քանաքեռի հիդրոէլեկտրակայանի շինարարության մեջ կազմակերպված առաջին ստախանովյան տասնորյակը յուրաքանչյուր բանվորի աշխատանքի արտադրողականությունը նորմայի համեմատությամբ ավե-

լացրեց միջին հաշվով 172%-ով, իսկ առանձին ստախանովականների՝ ընկ. ընկ. Ցեռխոսլի, Հովսեփյանի, Գալստյանի և ուրիշների արտադրանքը հասավ օրական նորմայի 1500—2000 %-ին:

Կաուչուկի կոմբինատի շինարարության մեջ կազմակերպված ստախանովյան տասնորյակներում յուրաքանչյուր բանվորի արտադրանքը միջին հաշվով կազմում էր նորմայի 246-ից մինչև 325%-ը, իսկ ստախանովականների առանձին, ամենից ավելի առաջավոր բրիգադների — Թաղճվոսյանի, Ղազարյանի, Մկրտչյանի և ուրիշների — արտադրանքը հասնում էր նորմայի ավելի քան 100%-ին:

ԿԻՐՈՎԱԿԱՆԻ ՔԻՄԻԱԿԱՆ ԿՈՄԲԻՆԱՏՈՒՄ յեթե 1936 թվականի սկզբներին կար ընդամենը յերեք ստախանովական, ապա տարվա վերջերին մենք ունեյինք 170 ստախանովական, վորոնք սիստեմատիկաբար աշխատանքի բարձր արտադրողականության օրինակներ եյին տալիս: Գործարանի անվանի ստախանովականների գերակշռող մեծամասնությունը կազմում են կոմունիստներ:

ԱԼԱՎԵՐԴՈՒ ՊՂՆՁԻ ԿՈՄԲԻՆԱՏՈՒՄ կոմունիստները համարյա բոլորն ստախանովական են:

Այդ ժամանակամիջոցին մեր արդյունաբերության մեջ աճեցին տասնյակ ու հարյուրավոր առաջավոր մարդիկ, վորոնք իսկական սոցիալիստական վերաբերմունք են ցույց տալիս աշխատանքին, վորոնք ստախանովյան շարժման նախաձեռնողներն ու կազմակերպիչներն են հանդիսանում, դրանց մեջ լավերից լավագույններն են՝

Պապյան Մինասը՝ շքանշանակիր, Ղափանի հանքերի հանքագործ:

Ղազարյան Գևորգը՝ շքանշանակիր, Կիրովականի քիմիական կոմբինատի հերթափոխության վարպետ:



Քոթանջյան Հայկազը՝ շքանշանակիր, Կաուչուկի կոմբինատի շինարարության արմատուրագործ:

Գողոսյան Թորգոմը՝ շքանշանակիր, Լենինականի շոգեքարշային դեպոյի մեքենավար:

Աբրահամյան Ցոլենան՝ շքանշանակիր, Լենինականի տեքստիլ կոմբինատի մանածագործ:

Ֆնտոխսով Կոնստանտինը՝ Քանաքեռհեկի վորմնադիր:

Թադևոսյան Բագրատը, Ղազարյան Լևոնը՝ Կաուչուկի կոմբինատի շինարարության բետոնագործներ:

Հովհաննիսյան Գառնիկը՝ շքանշանակիր, ցեմենտի գործարանի թրծող բանվոր և այլն և այլն:

Չկա վոչ մի ձեռնարկություն, վորտեղ ստախանովյան շարժումը հրապարակ հանած չլինի արտադրության ասպարեզում աշխատող տասնյակ ու հարյուրավոր նորանոր առաջավոր մարդիկ, վորոնք ինչպես ասել է ընկեր Ստալինը, նպատակ են դրել «Հաղթահարել ներկայիս տեխնիկական նորմաները, հաղթահարել գոյություն ունեցող նախագծային կարողությունները, հաղթահարել գոյություն ունեցող արտադրական պլանները ու հաշվեկշիռները»:

Դրա հետ միասին կան մի շարք ձեռնարկություններ, վորտեղ ստախանովյան շարժումը մինչև այժմ էլ դեռ պատշաճ բարձրության վրա չի դրված: Այս տեսակետից ամենից ավելի հետ են մնում՝

ԼԵՆԻՆԱԿԱՆԻ ՏԵՔՍՏԻԼ կոմբինատը, վորտեղ առաջատար պրոֆեսիաներին պատկանող բանվորների մեծ մասը (ջուլհակներ, մանածագործներ) մինչև այժմ էլ չեն յուրացրել նոր նորմաները:

ՂԱՓԱՆԻ ՊՂՆՁԻ կոմբինատը, վորտեղ նույնպես բանվորների զգալի թիվը թերակատարում է արտադրական նորմաները:

Մեր մի շարք ձեռնարկություններում աշխատանքի արտադրողականությունը 1936 թվականին ավե-

լացել է 22,9 տոկոսով։ Արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության աճման 1936 թվականի առաջադրանքները գերակատարվել են։

Այս տարիների ընթացքում մենք կարողացանք ավելացնել բանվոր դասակարգի թիվը, զգալի հաջողություններ ձեռք բերինք պրոլետարիատի սեփական ազգային կադրեր ստեղծելու գործում, վորոշ թերություններով հանդերձ ապահովեցինք ստախանովյան շարժման ծավալումը, բանվոր դասակարգից աճեցրինք տասնյակ ու հարյուրավոր առաջավոր մարդիկ, վորոնք ցույց են տալիս աշխատանքի սոցիալիստական արտադրողականության օրինակներ։

## ՏՐԱՆՍՊՈՐՏ

Ցերկաթուղային տրանսպորտը տարեց-տարի առաջ է գնում՝ զգալիորեն գերակատարելով իր պլանները. 1936 թվականին օրական միջին բեռնումը 211 վագոնի յեր հասնում։

| | Բեռնման օրական պլանը | կատարված է | կատարման տոկոսը |
|---|---|---|---|
| 1934 թ. | 107 վագոն | 131 վագոն | 122.4 տոկոսը |
| 1935 թ. | 122 վագոն | 165 վագոն | 135,2 տոկոսը |
| 1936 թ. | 164 վագոն | 211 վագոն | 128,7 տոկոսը |

Դեռ բավական հետ մնացող շոգեքարշային տնտեսության աշխատանքը բարելավելու դեպքում մենք կկարողանանք զգալի չափով բարձրացնել յերկաթուղային տրանսպորտի աշխատանքը։

## ԱՆՌԵԼՍ ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐ

Այս տարիների ընթացքում, մանավորապես 1936 թվին, առանձնապես հսկայական զարգացման հասավ տեղական ճանապարհների շինարարությունը։

Ճանապարհային շինարարության ասպարեզում, նոր ճանապարհների հետագա շինարարության և ճա-



նապարհազրկության վերջնական վերացման հետ միասին, պետք է ապահովել մեր ճանապարհների վորակի զգալի բարելավումը։

## ՄԵՐ ԹԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԱՍՊԱՐԻԶՈՒՄ

Սխալ կլիներ սահմանափակվել միմիայն վերև թվարկված հաջողություններով։ Նշելով արդյունաբերության ասպարեզում ձեռք բերված հաջողությունները, մենք պետք է կուսակցական կազմակերպությունների, տնտեսական կադրերի և բոլոր կուսակցական ու վոչ կուսակցական բոլշևիկների ուշադրությունը կենտրոնացնենք արդյունաբերության և տրանսպորտի աշխատանքում գոյություն ունեցող խոշորագույն թերությունների հաղթահարման վրա։

Վորո՞նք են հիմնական թերությունները. արդյունաբերությունը հսկայական աճ ունենալով հանդերձ տարեց-տարի թերակատարում է իր պլանները։

1934 թվականի պլանը կատարվել է 88,1 տոկոսով, 1935 թվականի պլանը՝ 92,9 տոկոսով, 1936 թվականի պլանը՝ 98,4 տոկոսով։ Մեր արդյունաբերության աշխատանքի ամենախոշոր թերությունները բաժին են ընկնում պղնձի ու քիմիական արդյունաբերության ձեռնարկություններին։

ՊՂՆՁԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆ. — Չնայած պղնձի արտադրության զգալի ավելացմանը, վորը 1933 թվականի 2.972.2 տոննից 1936 թվականին հասավ 6.238 տոննի, այնուամենայնիվ պղնձի արդյունաբերությունը պլանները չի կատարում և հանդիսանում է մեր արդյունաբերության ամենահետամնաց ճյուղը։ Այստեղ անշուշտ վնասարարության հետքեր կան։

Պղնձի արդյունաբերությունը հետ է մնում հիմնականում կապիտալ շինարարության գծով. օրինակ՝ ֆլոտացիոն գործարանը կառուցվեց Ղափանում, իսկ պղնձաձուլական գործարանը՝ Ալավերդում: Այդ պատճառով առաջացել է կոնցենտրատները Ղափանից Ալավերդի փոխադրելու ավելորդ, վոչնչով չարդարացվող աշխատանքը: Այսպիսով Ղափանն ունենալով ֆլոտացիոն գործարան, չունի պղնձի ձուլման գործարան, իսկ Ալավերդին ունենալով պղնձաձուլական հզոր գործարան, չունի ֆլոտացիոն գործարան:

Մեծ չափով հետ է մնում հանքային բազայի զարգացումը: Լայնորեն մասսայականացված էր Ալավերդու պղնձահանքերի աղքատացման ըստ եյության վնասարարական «թեորիան», վորով պղնձի ասպարեզում աշխատողները վարագուրում եյին նոր հանքեր հայտաբերելու և դրանք արդյունաբերական շահագործման նախապատրաստելու ուղղությամբ իրենց ցուցաբերած անգործությունը: Այդ «թեորիայի» հետևանքը հանդիսացավ հետախուզմանը հատկացվող դումարների սիստեմատիկ կրճատումը. 1933 թվականի 1.575 հազար ռուբլու փոխարեն 1936 թվականին հետախուզմանը հատկացվեց միայն 600 հազար ռուբլի:

Ձգձգվել է պղնձաձուլական գործարանի շինարարության ավարտումն Ալավերդում:

Մի շարք տարիների ընթացքում ձգձգվել է Ղափանի պղնձահանքերի գլխավոր հանքահորի շինարարության ավարտումը, վորի հետևանքով զգալի չափով դանդաղել է հանքի հանույթը:

Վերջին մեկ ու կես տարվա ընթացքում Ալավերդու աշխատողները, կոմբինատի դիրեկտոր ընկեր Ծատուրյանի և կուսակցության շրջկոմի քարտուղար ընկեր Ղարիբյանի գլխավորությամբ, զգալի աշխատանք կատարեցին հանքավայրերի աղքատացման



այդ վնասարարական «թեորիան» մերկացնելու ուղղությամբ:

Ալավերդցիները, շատ սահմանափակ նյութական հնարավորություններ ունենալով, 1936 թվականին լրացուցիչ կերպով հայտաբերեցին 200 հազար տոնն հանք՝ 1935 թվականի 85 հազար տոննի և 1934 թվականի 75 հազար տոննի փոխարեն: 1936 թվականին յերկրաբանական-հետախուզական աշխատանքի վրա ծախսված հազար ռուբլուն ընկնում է 298 տոնն հանք, իսկ 1933 թվականին՝ միայն 55,8 տոնն հանք: Այդ հետախուզումները սահմանափակված են միմիայն Շամլուղի ու Ալավերդու հանքավայրերում. բայց չէ՞ վոր Ալավերդու շրջանում կան մինչև այժմ չհետախուզված շատ հանքավայրեր (Շահալի-Եյլար, Ախթալա, Ձիրուխլի, Ագվի, Դսեղ և այլն):

Այս բոլորի հետևանքով, պղնձարդյունաբերության մեջ մենք ունենք այնպիսի կացություն, վոր հանքային բազան շատ հետ է մնացել և Ալավերդու պղնձաձուլական գործարանը բեռնավորված է միայն կիսով չափ: Նույնիսկ այդ ծրագրի կատարումն ապահովված չէ Ղափանի կոմբինատի խայտառակ աշխատանքի պատճառով, վորը վիժեցնում է կոնցենտրատների արտադրությունը: Պետք է ուղղակի ասել, վոր Ղափանի պղնձի կոմբինատը բոլոր պայմաններն ունի պլաններն զգալիորեն գերակատարելու համար: Կոմբինատի աշխատանքի վիժումը բացատրվում է բացառապես կոմբինատի ղեկավարների և մասնավորապես նրա դիրեկտոր ընկեր Կնդեղցյանի անգործունեությամբ. նա շատ ծանր հիվանդացել է ապուշային հիվանդությամբ՝ անհոգությամբ:

Կիրովականի քիմիական կոմբինատի պատմությունը վկայում է, վոր այնտեղ գոյություն ունի

ուղղակի վնասարարություն գնդակահարված Պյատակովի ու Ռատայչակի, այդ ճապոնա-գերմանական տրոցկիստական գործակալների կողմից:

Պյատակովի ուղղակի վնասարարական միջամտության պատճառով, ավարտված և շահագործման հանձնված կարևոր գործարաններից մեկը 1933 թվականին կոնսերվացիայի յե յենթարկվել, շինարարությունը տարիներ շարունակ ձգձգվել է և մի քանի անգամ կոնսերվացիայի յե յենթարկվել:

Սրիկա Պյատակովի և Ռատայչակի կարգադրությամբ գործարանից պետք է դուրս բերվեյին ազոտաթթվային սարքերը, և միմիայն կուսակցության Անդրյերկոմի միջամտությունը կանխեց այդ վնասարարական գործողությունը:

Ի պատիվ Կիրովականի քիմիական գործարանի դիրեկտոր ընկեր Մարգարյանի, պետք է ասել, վոր նա գտնվեց դրության բարձրության վրա և կարողացավ մասամբ չեզոքացնել գործարանի դեմ ուղղված վնասարարական հարվածները:

«ՍՈՎՊՐԵՆ» ՍԻՆԹԵՏԻԿ ԿԱՈՒՉՈՒԿԻ ԿՈՄԲԻՆԱՏԻ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ. — Մեր արդյունաբերության ամենանեղ տեղն է հանդիսանում «Սովպրեն» սինթետիկ կաուչուկի կոմբինատի շինարարությունը: Այդ շինարարությունը բավական ժամանակ կատարվում եր ընդհանրապես առանց նախագծերի ու առանց հաստատված նախահաշիվների, ապա կոմբինատի նախագիծը յերեք անգամ ամբողջովին վերափոխվեց, վերջին վերանախագծումն ավարտվեց մի ամիս առաջ, իսկ առանձին ցեխեր ու գործարաններ վերանախագծվել են ու վերանախագծվում են բազմաթիվ անգամ:

Մյուս կողմից, միջոցները սիստեմատիկաբար ցիր ու ցան եյին արվում բոլոր օբյեկտների վրա և, հակառակ Կենտկոմի ցուցումների, ընկեր Կուրսեյը



չապահովեց հիմնական ներդրումների օգտագործումն այնպիսի ձևով, վոր կազմակերպվի մի շարք ցեխերի շահագործումը՝ ամբողջ կոմբինատի շինարարությունն ավարտելուց առաջ:

Շինարարության մեջ լայն չափով գերածախս է կատարվում, թանկ են նստում շինարարական աշխատանքները, կառուցվող ցեխերից մի քանիսը դեռ սարքավորմամբ չեն ապահովված, շինարարության մեջ ժամկետներ չեն սահմանվել առանձին ցեխերի շինարարությունն ավարտելու և շահագործման հանձնելու համար: Միանգամայն անբավարար է կադրեր ընտրելու և կոփելու աշխատանքը, ուստի և շինարարության մեջ սողոսկել են խորթ ու թշնամի մարդիկ, կային հակահեղափոխական-դիվերսիոն խմբակներ, վորոնց ձերբակալեցին Ներքգործժողկոմատի օրգանները:

Ինչո՞ւմն է բանը: Ինչպե՞ս կարող եր պատահել, վոր այդպիսի խոշոր շինարարության մեջ վնասարարները հնարավորություն ստանային անպատիժ կերպով կատարելու իրենց գարշելի աշխատանքը:

Պատճառն այն է, վոր շինարարության պետ ընկեր Կուրսեյն ինքնահոսի յեր մատնել գործը, չեր ղեկավարում, պայքար չեր կազմակերպում շինարարությունն ամենաարագ կերպով ավարտելու համար: Ուստի և վորևե դիմադրություն չկար այդ անվերջ վերանախագծումներին, վորոնք ըստ եյության շարունակ ձգձգում եյին շինարարությունը:

Պարզ է, քանի վոր «Սովպրեն» սինթետիկ կաուչուկի կոմբինատի շինարարությունը գտնվում եր քիմիական արդյունաբերության գլխավոր վարչության գերատեսչության տակ և գլխավորվել եր գերմանական գործակալ, վնասարար Ռատայչակի կողմից, ապա այդ կոմբինատի շինարարությունն առանց վնասարարության չեր կարող կատարվել:

Պյատակովի, Ռատայչակի և մյուսների ցուցմունքներից յերևում է, վոր նրանց վնասարարության ձևերից մեկն եյին հանդիսանում նախագծման գործի վիժեցումը, վերանախագծումները և այլն, վորպեսզի հնարավոր լիներ վիժեցնել համամիութենական նշանակություն ունեցող ամենակարևոր ձեռնարկությունների շինարարությունը:

Յեթե շինարարության պետ ընկեր Կուրսելը չաշխատեր հին ձևով, «ընդհանրապես ղեկավարելով», առանց թափանցելու գործի մանրամասնությունների մեջ, վորի հետևանքով աշխատանքի առանձին բնագավառներ կապալով եյին տրվել առանձին մարդկանց, թերևս հնարավոր կլիներ այդ բոլոր մեքենայությունները ժամանակին յերևան բերել:

Կենտրոնական Կոմիտեն խնդիր դրեց Ծանր արդյունաբերության ժողկոմ ընկեր Մեժլաուկի առաջ՝ նախ ստուգելու այն բոլոր աշխատանքները, վոր կատարված են այս բնագավառում, յերկրորդ՝ ավելի կոնկրետ ժամկետներ սահմանելու կատարվելիք աշխատանքների համար:

Այս շինարարությունը խորհրդային Միության մեջ իր տեխնիկայի տեսակետից առաջիններից է, ուստի պարզ է, վոր չափազանց շատ դժվարություններ կունենա: Կոմբինատի շինարարությունը ներկայումս հիմնականում պլանավորված, ծրագրված է, բացի մի քանի մասնակի ցեխերից:

Պետք է հուսալ, վոր Ծանր արդյունաբերության ժողկոմատի ղեկավարության շնորհիվ և այն աշխատանքի շնորհիվ, վոր պետք է կատարի սրանից հետո ընկեր Կուրսելը, ռայոնական կոմիտեյի և վողջ կուսակցական կազմակերպության օգնությամբ, հաջողությամբ կավարտենք այդ շինարարությունը մոտակա ամիսների ընթացքում:

Ալավերդու ծծմբաթթվային գործարանը տարե-



կան 25 հազար տոնն ծծմբաթթու արտադրելու կարողության, վերջնականապես կառուցված չենք և վորոշ քանակությամբ սարքավորում ունենալով, մի շարք տարիներ կոնսերվացիայի յե յենթարկված և գործարանի շինարարության մեջ ներդրված մոտ 2 միլիոն ռուբլին սառեցված է տեղական արդյունաբերության ժողկոմատի մեղքով, վորը չապահովեց գործարանի վերջնական պատրաստումը:

Տեղական արդյունաբերության ժողկոմ ընկեր Ս. Հովսեփյանը գործարանի ավարտման հարցերը գործնականորեն լուծելու փոխարեն գերադասեց հրաժարվել գործարանից:

Նույն վիճակի մեջ է Յերևանի քիմիական կոմբինատի շինարարությունը, վորը նմանապես Տեղական արդյունաբերության ժողկոմատի մեղքով մինչեվ այժմ ել նախագծեր չունի:

Վերջապես պետք է ուշադրություն կենտրոնացնել և շինանյութեր արտադրող ձեռնարկությունների աշխատանքի վրա, վորոնք չարունակ թերակատարում են իրենց արտադրական պլանները: Ցեմենտի գործարանը, ունենալով տարեկան 140 հազար տոնն ցեմենտ արտադրելու կարողություն, արտադրում է տարեկան 90 հազար տոննից վոչ ավելի:

Իր ժամանակին այդ գործարանը շինվել է մի անապատում: Հարկավոր եր, վոր այդ անապատում,— վորտեղ չկային վոչ բնակչություն, վոչ ջուր, վոչ ել ապրելու հնարավորություններ,— գործարանը շինվելուց հետո շինվեյին նաև բնակարաններ, բերվեր խմելու ջուր և առհասարակ աշխատավորության ու բանվորության համար ստեղծվեյին ապրելու հարմարություններ:

Պետք է ասել, վոր մինչեվ այժմ ել ցեմենտի գործարանում այդ հնարավորությունները լրիվին չեն ստեղծվել: Գործարանի նախկին դիրեկտոր տրոց-

կիսա–հակահեղափոխական Ծամչյանը, վորը ձերբակալված է, վոչ մի գործ չի արել այս ուղղությամբ: Նա տարեց–տարի հակապետական աշխատանք է կատարել ցեմենտի բաշխման ասպարեզում: Հակահեղափոխական Յերզնկյանի հետ միասին, Տեր–Գաբրիելյանի գլխությամբ, ցեմենտի գործարանի արտադրանքի պլանավորումը կատարել է այնպես, վոր մեր խոշոր շինարարությունները և մասնավորապես Հարեվան Հանրապետությունների շինարարությունները տարեց–տարի չեն ստացել պլանով նախատեսված իրենց հասանելիք ցեմենտը: Սոյուզցեմենտի գլուխ կանգնած է բոլորին հայտնի ընկ. Լուկաշինը շատ քիչ ուշադրություն է դարձնում այս գործարանի էական կարիքները բավարարելու վրա:

Ցեմենտի գործարանը դեռ մինչև այսոր էլ նեղ տեղ է հանդիսանում: Այնտեղ ուղարկված աշխատողները, մանավանդ գործարանի դիրեկտոր ընկեր Նալբանդյանը, առայժմ չեն ապահովել գործարանի աշխատանքի անհրաժեշտ բարելավումը:

Շինանյութեր արտադրող մեր մյուս խոշոր ձեռնարկությունը՝ «Արթիկ–տուֆը»՝ նույնպես սիստեմատիկաբար թերակատարում է իր պլանները: Այստեղ պետք է ասել ընկ. Խորեն Հովսեփյանի՝ մեր տեղական արդյունաբերության ժողովրդական կոմիսարի մասին, վոր շատ դանդաղ է վերակառուցում իր աշխատանքը, շատ քիչ է կապված իր գործարանների և արտադրության հետ: Տեղական արդյունաբերության ժողկոմատը և ընկ. Խորեն Հովսեփյանը վոչ միայն չեն տեսնում դեռ մինչև որս էլ թշնամու քայքայիչ աշխատանքը, այլև նույնիսկ չեն կարողացել ազատվել ղեկավարման գրասենեկային–բյուրոկրատական մեթոդներից:

Խորհրդային Հայաստանում չկա վոչ մի գործարան, վորը հնարավորություն չունենար իր պլան–



ները լրիվ կատարելու: Իսկ մենք տեսնում ենք, վոր տեղական արդյունաբերության հիմնարկները, մանավանդ այն գործարանները, վորոնք շինանյութ են արտադրում, վատ են աշխատում և իրենց պլանները չեն կատարում՝ վատ ղեկավարության հետևանքով:

Համագումարը պետք է պահանջի ընկեր Հովսեփյանից աշխատել այնպես, վոր իր կոմիսարիատին յենթակա բոլոր գործարաններն էլ ժամանակին կատարեն և գերակատարեն իրենց պլանները:

Մենք շատ վատ ենք աշխատում շինարարության ասպարեզում: Առաջին հերթին պետք է խոսել շինարարության գործում յեղած վատ տրադիցիաների մասին:

Ձեզ հայտնի յե այն փաստը, վոր տարիներ շարունակ հակակառավարական, հակապետական գործողությունների միջոցով Ժողկոմխորհը, Կենտկոմի գլխությամբ (խոսքս վերաբերում է Հայաստանի Ժողկոմխորհին և Կենտկոմին), անպլան շինարարության կատարելու համար հսկայական գումարներ է վերցրել արդյունաբերական այս կամ այն ճյուղից:

Այդ հակապետական գործողությունը միայն այն վնասը չի հասցրել, վոր կառավարության գրպանից փաստորեն ապորինի ճանապարհով խոշոր գումարներ են վերցված անպլան ծախսերի համար, այլև այն վնասն է հասցրել, վոր խորհրդային ֆինանսական դիսցիպլինան— պետական դիսցիպլինան— շարունակ խախտելով՝ մարդիկ ստեղծել են անպատասխանատվության մի այնպիսի մթնոլորտ, վորտեղ հակապետական գործողությունները (Խանջյանի որոք) սովորական են դարձել, այնպես վոր ամեն մի փոքր թե մեծ շինարար կարող եր հաշվի չնստել նախահաշվի հետ, պլանների հետ, նախագծի հետ և այլն, և այլն: Այս պատճառով էլ շինարարության հա–

մար պլանով նախատեսված գումարները 2—3 անգամ ավելի եյին ծախսվում:

Այս բոլոր խայտառակությունները լիկվիդացիայի յենթարկելուց հետո՝ մենք 1936 թվին ինքնարժեքի իջեցման ուղղությամբ ունենք վորոշ հաջողություններ, բայց այդ բավարար համարել չի կարելի:

Հաշվետու շրջանում շինարարության հարցերը մեծ տեղ են գրավել կուսկազմակերպությունների աշխատանքում: Այդ հարցերը դուրս չեն մնացել կենտկոմի աշխատանքի որակարգից, մանավանդ շինարարության գործի կարգավորման վերաբերյալ ՀամԿ(բ)Կ կենտկոմի հայտնի վորոշումից հետո:

Ընդհանուր մինչև 1936 թվականը շինարարության մեջ գոյություն է ունեցել մեծ չփոթ, այդ գործում վոչ մի կարգ ու կանոն չի յեղել: Շինարարությամբ զբաղվում եյին համարյա բոլոր տնտեսական որգանները: Առ 1-ը հունվարի 1936 թ. հանրապետության մեջ կար շինարարությամբ զբաղվող ավելի քան 200 կազմակերպություն: Շինարարության գործում տիրապետում եր պարտիզանականություն:

Շինարարության ցրվածությունը հնարավորություն չեր տալիս մեքենայացման վորևե աշխատանք կատարելու այդ ասպարեզում: Այդ կացության հետևանքով մեծ չափով թանկացել եյին շինարարական աշխատանքները, այսպես որինակ՝ հանրապետության մեջ 1934 թ. ընթացքում փոխանակ շինարարության արժեքը 15 տոկոսով իջնելու, բարձրացել եր 15,2 տոկոսով:

1935 թվին դրությունը նույնն եր, իսկ առանձին որգաններում գոյություն ուներ ավելի մեծ թանկացում— Լենտեքստիլ՝ 27,9 տոկոսով, Հայաստանի Բնակշինկոոպ միությունը՝ 35,6 տոկոսով, Կապի վարչությունը՝ 17 տոկոսով:



Ցույց տալու համար շինարարության ինքնարժեքի իջեցման ժողովրդատնտեսական հսկայական նշանակությունը, բավական ե, յեթե ասենք, վոր 1935 թվականին շինարարության թանկացումը ժողովրդական տնտեսությանը նստել է 44 միլիոն ռուբլի:

Շինարարական աշխատանքների արժեքի թանկացումն ունեցավ այն հետևանքը, վոր համարյա վոչ մի շինարարություն չեր մնում նախահաշվային արժեքի շրջանակներում, շինարարությունները ձգձգվում եյին և մի տարուց անցնում եյին մյուս տարվան: Այդ թերություններն այս կամ այն չափով հատուկ եյին բոլոր կազմակերպություններին:

ՀամԿ(բ)Կ կենտկոմի՝ շինարարության բարելավման վերաբերյալ վորոշումը խթան հանդիսացավ վերանայելու հանրապետության շինարարական գործի ամբողջ դրվածքը:

ՀԿ(բ)Կ կենտկոմը, լիկվիդացիայի յենթարկելով գոյություն ունեցող շինարարական կազմակերպությունները, վորոշեց կազմակերպել յերեք խոշոր շինարարական կապալատու տրեստ՝ Հայշինարդ, Հայշին, Յերևանի Քաղշին, վորոնց ձեռքում կենտրոնացած են այժմ հանրապետության բոլոր շինարարությունները:

Շնորհիվ այդ ձեռնարկումների և նախագծման ու նախահաշվի գործի վորոշ բարելավման, շնորհիվ արտապլանային շինարարության վերացման, մենք առաջին հաջողությունները ձեռք բերինք շինարարությունների պլանների կատարման, շինարարական գործի կանոնավորման բնագավառում:

Յեվ, այնուամենայնիվ, շինարարությունը մնում է վորպես մեր տնտեսական աշխատանքի ամենահետամնաց ճակատամասերից մեկը:

Այստեղ հիմնական թերությունները հետևյալներն են՝

Մինչև այժմ էլ շարունակվում է հետ մնալ նախագծման ու նախահաշվի գործը: Թույլ են օգտագործվում շինարարական մեխանիզմները (մեխանիզմների՝ բետոն շաղախող մեքենաների, քար փշրող մեքենաների, բարձրացնող մեքենաների, ավազ պատրաստող և այլ մեքենաների օգտագործման կոեֆիցիենտը 50—55 տոկոսից չի անցնում):

Վատ է կազմակերպված աշխատանքը, կան բանվորների մեծ պարապուրդներ, ցածր է աշխատանքի արտադրողականությունը, թույլ է ծավալված ստախանովյան շարժումը:

Ցածր է աշխատանքի վարձը, փոփոխությունների յեն յենթարկվում կատարված աշխատանքները: Մինչև այժմ էլ դեռ բարձր է շինարարության արժեքը, չեն կատարվում աշխատանքի արժեքի իջեցման պլանները:

***

Այսպես ուրեմն, թե՛ արդյունաբերության և թե՛ շինարարության մեջ մենք ունենք դեռ խոշոր բացեր:

Այդ բացերի հիմնական պատճառն են՝

«Նեղ գործամոլությունը, մտահորիզոնի սահմանափակումը նեղ— տնտեսական շրջանակներով, կուսակցական-քաղաքական խնդիրներից կտրվելը և այդ բոլորից սնունդ առած քաղաքական կարճատեսությունը բաժին ընկան մեր տնտեսական ճակատի շատ աշխատողներին:

Բոլշևիկյան զգաստությունը բարձրացնելու փոխարեն, արդյունաբերության և տրանսպորտի շատ աշխատողներ քաղաքականապես հետ մնացին, ընկան քաղքենիական բարեհոգության, քաղաքական անհոգության հունը» (ՄՈԼՈՏՈՎ):

Ձեռնարկությունների ղեկավարելու գրասենյակային-բյուրոկրատական մեթոդը՝ յերբ մեր տնտեսական կադրերը շարունակում են ղեկավարել ընդհան-



րապես, առանց թափանցելու գործի մանրամասնությունների մեջ, աշխատանքը վերավստահելով հաճախ չստուգված աշխատողների, վորոնք և ըստ եյության լուծում են հարցերը:

Քաղքենիական բարեհոգություն, քաղաքական անհոգություն և ղեկավարման գրասենյակային-բյուրոկրատական մեթոդների հետևանքով ուշադրություն չի նվիրվում կադրերի ընտրությանն ու ստուգմանը: Հակառակ մեր կուսակցության բազմիցս արած ցուցումներին, մեր տնտեսվարները կադրերի ընտրության ու ստուգման գործը վերավստահում են յերկրորդական անձանց: Այստեղից էլ բխում է քաղաքականապես ու գործնականորեն չստուգված, պատահական մարդկանց ընտրությունը:

Սրանք են մեր թերությունների հիմնական պատճառները:

Այս թերությունները կարող են վերացվել և պետք է վերացվեն Համ.Կ(բ)Կ Կենտկոմի Մարտյան Պլենումի վորոշումների բոլշևիկյան կենսագործման հիման համար:

Հետևապես հիմնական խնդիրներն են՝

1. Ամենակարճ ժամանակամիջոցում լիկվիդացիայի յենթարկել վնասարարության հետևանքները՝ հատկապես քիմիական և լեռնահանքային արդյունաբերության մեջ, առաջ մղել պղնձի ու մոլիբդենի արդյունաբերության զարգացման գործը, առաջ մղել քիմիական արդյունաբերությունը—Սինթետիկ կաուչուկի, քացախաթթվի արտադրությունը և կարբիդից ստացվող նյութերի արտադրությունը: Ավելի լայնորեն օգտագործել յերկրի բոլոր ռեսուրսները:

2. Առաջ մղել յերկրի ելեկտրիֆիկացիայի գործը, ծավալել սոցիալիզմի մեծագույն շինարարության՝ հիդրոելեկտրակայանների Սևան-Զանգվի կասկադի կառուցման գործը:

3. Առաջ մղել հետ մնացող ձեռնարկությունները, վերջ դնել նրանց կողմից պլանները թերակատարելուն:

4. Վերջ դնել շինարարական գործի հետամնացությանը, կանոնավորել շինարարությունը, այդ գործը հասցնել ժողովրդական տնտեսության զարգացման խնդիրների մակարդակին:

Այս խնդիրների կատարման համար մենք պետք է օգնենք մեր տնտեսական կադրերին, ինժեներ—տեխնիկական աշխատողներին՝ վերացնելու ապուշային հիվանդությունը— անհոգությունը, լիկվիդացիայի ենթարկելու ղեկավարման գրասենյակային—բյուրոկրատական մեթոդը, տիրապետելու բոլշևիզմին:

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐ

Հայաստանի կուսակցական կազմակերպություններն անցյալ շրջանում զգալի հաջողություններ ձեռք բերին գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման ասպարեզում:

Այդ տարիները հանդիսացան կոլտնտեսային շինարարության հետագա աճման և գյուղատնտեսության բոլոր ճյուղերի վերելքի տարիներ:

Զգալի չափով բարձրացավ բերքատվությունը,— հացահատիկներինը՝ 1936 թ. մի հեկտարից 11,9 ցենտներ, 1934 թվի 8,4 ցենտ. դիմաց, բամբակինը՝ համապատասխանորեն 12.7 և 7,8 ցենտներ. ծխախոտինը՝ 10,5 և 6,6 ցենտներ:

Խոշոր եղջերավոր անասունների թիվը համեմատած 1934 թ. հետ, առ մեկը հունվարի 1937 թ., ավելացավ 100.000 գլխով, կամ 17 %-ով, մանր եղջերավոր անասուններինը՝ 318 հազար գլխով, կամ 40,3 %-ով:



Զգալիորեն աճեց գյուղատնտեսության տեխնիքական զինվածությունը՝ մեքենա—տրակտորային կայանների թիվը 1934 թվականի 15-ից 1936 թվականին հասավ 24-ի:

Տրակտորների ընդհանուր թիվը մեքենա—տրակտորային կայաններում 1934 թվականի 409-ից 1937 թվականին հասավ 1183 հատի:

Տրակտորային պարկի ընդհանուր կարողությունը 1937 թվականին կազմում է 17,753 ձիու ուժ՝ 1934 թվականի 6026 ձիու ուժի դիմաց: Ներկայումս մեքենա—տրակտորային կայաններն ունեն 178 բեռնակիր ավտո, 135 կոմբայն, 138 կալսիչ մեքենա:

Կատարված աշխատանքի ծավալը՝ փոխադրած փափուկ հողի վարի, 1937 թվականին կազմում է 520 հազար հեկտար, 1934 թվականի 117 հազար հեկտարի դիմաց: Մի տրակտորի բեռնվածությունը 1936 թվականին 390 հեկտարի յե հասել, 1934 թվականի 245 հեկտարի դիմաց:

Մեքենա—տրակտորային կայանների սպասարկած կոլտնտեսությունների թիվը հասնում է 645-ի, կամ հանրապետության բոլոր կոլտնտեսությունների 54 տոկոսը:

Մեքենա—տրակտորային կայանների սպասարկած կոլտնտեսությունների ցանքի տարածությունը 1936 թվականին կազմում է 223 հազար հեկտար՝ 1934 թվականի 84 հազար հեկտարի դիմաց:

Գյուղատնտեսության ասպարեզում կուսակցության ու կառավարության գործադրած ձեռնարկումների շնորհիվ, մենք ունենք գյուղատնտեսության բոլոր ճյուղերում մթերքների ընդհանուր արտադրության անշեղ աճ:

Կոլտնտեսությունների ամրացման գործում վըճ-

տական նշանակություն ունեցավ գյուղատնտեսական արտելի ստալինյան կանոնադրությունը:

Գյուղատնտեսական արտելի նոր կանոնադրության անշեղ կենսագործման հիման վրա տեղի յեր ունենում կոլտնտեսությունների հզոր աճը:

Առ 1-ն հունվարի 1934 թվականի գոյություն ունեցող 892 կոլտնտեսություններում միացել եր 62220 տնտեսություն կամ բոլոր տնտեսությունների 37 տոկոսը:

Առ 1-ն ապրիլի 1937 թվականի կոլտնտեսությունները միացրել են գյուղացիական տնտեսության 88,9 տոկոսը: Յերեք տարվա ընթացքում կոլտնտեսություններն են ընդունվել ավելի քան 103 հազար տնտեսություն:

Հիմնական մշակույթների՝ բամբակի, հացահատիկի, ծխախոտի և այլ մշակույթների արտադրության մեջ գլխավոր դերն անցավ կոլտնտեսություններին:

Ցանքերի ամբողջ տարածությունից 335.591 հեկտարը, կամ 84.7 տոկոսը գտնվում է կոլտնտեսություններում և կոլտնտեսականների ձեռքում:

Կոլտնտեսություններում մենք ունենք հանրայնացված ֆոնդերի արժեքի մեծ աճ,—

Առ 1937 թվականի հունվարի 1-ը հանրային ֆոնդերի արժեքը հասավ 114.589 հազար ռուբլու, առ 1934 թվականի 1-ն հունվարի՝ 51.800 հազար ռուբլու դիմաց: Զգալիորեն աճեց կոլտնտեսությունների ընդհանուր յեկամուտը:

Յեթե առ 1934 թվականի հունվարի 1-ը կոլտնտեսություններն ունեյին փողով 60 միլիոն ռուբլի ընդհանուր յեկամուտ, ապա առ 1937 թվականի հունվարի 1-ը նրանց ընդհանուր յեկամուտը հասավ 175 միլիոն ռուբլու, այդ թվից դրամական յեկա-



մուտ՝ առ 1934 թվականի հունվարի 1-ը 41 միլիոն ռուբլի, առ 1937 թվականի հունվարի 1-ը 97 միլիոն ռուբլի:

Հացահատիկային մշակույթների ընդհանուր բերքը 1936 թվականին կազմում եր 25.676,400 փութ, 1932 թվականի 9,648,180 փթի դիմաց.

Հայաստանի կոլտնտեսությունները 1936 թվականի յեկամուտներից անբաժանելի ֆոնդին հատկացրել են 13 միլիոն ռուբլի՝ 1933 թվականի 5,5 միլիոն ռուբլու դիմաց, չհաշված կոլտնտեսությունների կողմից արտադրության մեջ արված աշխատանքային ներդրումները, վորոնք կազմում են 2217 հազար աշխոր՝ մոտ 6 միլիոն ռուբլի՝ գումարով: Կոլտնտեսությունների աճմանն ու ամրացմանը զուգընթաց աճեցին կոլտնտեսականների մեջ ըստ աշխորերի բաշխվող դրամական յեկամուտները: 1936 թվականին բաշխվել եր 53 միլիոն ռուբլի դրամով, մինչդեռ 1933 թվականին բաշխվել եր 10 միլիոն ռուբլի:

Աշխորերի միջին արժեքը 1933 թվականի 1ռ. 83 կոպեկից, 1937 թվականին հասավ 2ռ. 50 կոպեկի:

Հացահատիկ հասնում եր յուրաքանչյուր տնտեսության 1936 թվականին 1214 կիլոգրամ,—1935 թվականի 752 կիլոգրամի դիմաց: Կոլտնտեսության մի աշխատունակ անդամին հացահատիկ եր հասնում 1936 թվականին 643 կիլոգրամ՝ 1935 թվականի 393 կիլոգրամի դիմաց:

Մենք ունենք լավ աշխատող կոլտնտեսությունների հարյուրավոր որինակներ, կոլտնտեսություններ, վորոնք մեծ յեկամուտներ են ստանում և վորտեղ աշխորի միջին արժեքը շատ բարձր է:

| ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՆՈՒՆՆԵՐԸ | Ընդհանուր յեկամուտ | Արտադրության հիմնական միջոցների արժեքը | Աշխօրերի արժեքը |
|---|---|---|---|
| 1. «Գետաշատ», Ղամարլուի շրջ. | 839 հազ. | 403 հազ. | 21 ռ. 30 կ. |
| 2. Ամիրբեկյանի անվան կոլտնտեսություն—Ղամարլուի շրջ. | 1247 հազ. | 373 հազ. | 17 ռ. 61 կ. |
| 3. Դահարլուի կոլտնտ.— Ղամարլու | 1588 հազ. | 423 հազ. | 16 ռ. 82 կ. |
| 4. «Զանգեզ» Վաղարշապատի շրջան | 1157 հազ. | 356 հազ. | 22 ռ. 64 կ. |
| 5. «Պայքար», Վաղարշապատի շրջան | 1030 հազ. | 837 հազ. | 16 ռ. — կ. |
| 6. Ոշական—Աշտարակի շրջան | 1233 հազ. | 548 հազ. | 15 ռ. 05 կ. |
| 6. Լենինի անվան կոլտնտեսություն—Հոկտեմբերյանի շրջան | 1018 հազ. | 319 հազ. | 10 ռ. 25 կ. |

Բարեխղճորեն աշխատող հազարավոր կոլտնտեսականներ, գյուղատնտեսական արտելի ստալինյան կանոնադրության հիման վրա ունեվոր կյանքի հասան: Ահա մի քանի օրինակներ.

1. Ղամարլուի շրջանի Բեջազլու գյուղի կոլտնտեսության անդամ Մարտիրոս Ավագյանը 1936 թվականին ստացավ փողով 6.360 ռուբլի և 3.300 ռուբլու արժողությամբ մթերք:

2. Վաղարշապատի շրջանի «Զանգեզ» կոլտնտեսության անդամ Ղուլի աղջի Այնի 1936 թվականին փողով և մթերքով ստացավ 11.748 ռուբլի:



3. Ղամարլուի շրջանի Գետաշատ կոլտնտեսությունից Գալուստ Կարապետյանը մթերքով ու փողով ստացավ 8715 ռուբլի: Կարապետյանը 1936 թվականին կառուցեց յերկհարկանի մի տուն, բաղկացած մի քանի սենյակներից, գնեց հեծնելու ձի, յերկու յերկաթե մահճակալ, 10-ը վոչխար, հեծանիվ և տնային պիտույքներ, վարում է մաքուր, ունեվոր ու կուլտուրական կյանք:

4. Նոր Դվինի «Շինարար» կոլտնտեսության անդամ Մուշեղ Սայադյանը 1936 թվականին ուներ 450 աշխօր, մթերքով և փողով ստացավ 9450 ռուբլի, գնեց մի կով, մի եզ, գոմեշ, յերկու մահճակալ, շիֆոներկա, պատեֆոն, 70 գիրք և այլն:

Նախկին բատրակ, այժմ Աշտարակի կոլտնտեսության նախագահ Ցեզոր Գալստյանը 1936 թվականին իր աշխօրերի դիմաց ստացավ 2100 կիլոգրամ հացահատիկ, 2940 կիլոգրամ խաղող, 55 փութ գինի, 5 փութ արաղ և բազմաթիվ այլ մթերքներ (յուղ, պանիր, մեղր և այլն) և 2000 ռուբլի փող:

Լենինականի շրջանի Մոլլա-Մուսա գյուղի կոլտնտեսության անդամ, տրակտորիստ Ալեքսան Պողոսյանը ստացավ 12 հազար կիլոգրամ հացահատիկ, 20 հազար կիլո խոտ ու դարման և 6 հազար ռուբլի փող:

Լենինականի շրջանի Կագանովիչի անվան կոլտնտեսության անդամ շքանշանակիր կոմբայնավար Գուրգեն Մարգարյանը մթերքով և փողով ստացավ 17 հազար ռուբլի յեկամուտ:

Այս թվերի մեջ չի մտնում կոլտնտեսականների՝ տնամերձ հողամասերից ստացած յեկամուտը:

Այս հաջողությունները ե՛լ ավելի նշանակալից կլինեին, յեթե մենք ավելի լավ ղեկավարեինք կոլտնտեսությունները:

Մի շարք կոպիտ խախտումներ ու խեղաթյուրումներ թույլ տրվեցին գյուղատնտեսական արտելի ստալինյան կանոնադրության կիրառման բնագավառում՝

1. Անտեսվել է կոլտնտեսությունների ընդհանուր ժողովների դերը և չի պահպանվել մեր կոլտնտեսային դեմոկրատիան, մասնավորապես կոլտնտեսությունների կառավարման օրգանների ընտրականության սկզբունքը:

Աշտարակի շրջանի Կոշ գյուղի կոլտնտեսության մեջ նախագահը և վարչության անդամները կոլտնտեսության ընդհանուր ժողովի կողմից չեն ընտրվել, այլ նշանակվել են վերևից, շրջանային կազմակերպությունների կողմից:

Նույն կոլտնտեսության մեջ տեղի ունեցած 13 ընդհանուր ժողովներից վոչ մեկն օրինական չի յեղել, վորովհետև ներկա չի յեղել կոլտնտեսության անդամների յերկու յերրորդ մասը, ինչպես այդ նախատեսված է գյուղատնտեսական արտելի կանոնադրությամբ:

Կոլտնտեսության վարչությունն իր վորոշմամբ աշխատանքից հեռացրել է վերաստուգիչ հանձնաժողովի ամբողջ կազմը և այն փոխարինել է նորով:

Մեղրու շրջանի Լիճք գյուղի կոլտնտեսության վարչությունն ինքնակամ կերպով, իր վորոշմամբ, հեռացնում և կոոպտացիայի յե յենթարկում վարչության անդամներին:

2. 15 ամսվա ընթացքում Աշտարակի շրջանում փոխվել են կոլտնտվարչության 36 նախագահ, ընդ վորում 4 կոլտնտեսություններում փոխվել են 3-ական նախագահ: Աշխատանքից ազատված նախագահներից միայն 6 հոգի հաշիվ են տվել կոլտնտեսականների ընդհանուր ժողովում:



3. Միկոյանի շրջանի Եղվին գյուղի կոլտնտեսության մեջ անդամների միայն մի յերրորդ մասի մասնակցությամբ գումարված ընդհանուր ժողովը կոլտնտեսությունից վտարում է յերեք կոլտնտեսական՝ նրանց բացակայությամբ:

4. Ստեփանավանի շրջանի Ղարաքիլիսա գյուղի կոլտնտեսության մեջ, անօրինական մի ժողովում, ընդունվել է 127 տնտեսություն:

5. Կուսակցության շրջանային կոմիտեների կարգադրությամբ ազատված կուսկազմակերպիչներին աշխորեր են տալիս Ստեփանավանի, Աշտարակի շրջանները:

6. Ստեփանավանի շրջանի Սարատովկա գյուղի կոլտնտեսության վարչության վորոշմամբ, առանց ընդհանուր ժողովի համաձայնության, գնվել է մի ավտոմեքենա: Այդ գումարը նախատեսված չի յեղել կոլտնտեսության ֆինանսական նախահաշվում:

Պետք է նշել մի վնասակար պրակտիկա՝ շրջանային կենտրոնից աշխատողներ ուղարկելը, վորպես կոլտնտեսությունների նախագահներ, կոլտնտվարչությունների նախագահի տեղակալներ և այլն: Դժբախտաբար այդ պրակտիկան բնորոշ է շատ շրջանների համար (Ապարան, Աշտարակ և այլն): Սա նշանակում է, վոր տեղական կադրերին մենք չենք ճանաչում կամ չենք հավատում: Հարկավոր է, վորպեսզի կոլտնտեսությունների նախագահներն առաջ քաշվեն այն մարդկանցից, վորոնք կապված են գյուղի և կոլտնտեսության հետ:

Մեզ մոտ քիչ չեն փաստեր, յերբ կոլտնտեսությունների վարչություններն զգայուն չեն, բյուրոկրատաբար են վերաբերվում կոլտնտեսականների անձնական կարիքների սպասարկմանը, մանավանդ կոլտնտեսականների տնամերձ հողամասերի մշակմանն օգնե-

լու գործում: Դրանից օգտվում է դասակարգային թշնամին՝ գյուղատնտեսական արտելի կանոնադրության վարկաբեկելու համար:

Հողային օրգանները պայքար չեն մղում կոլտնտեսությունների աշխատանքային կարգապահության համար, կոլտնտեսությունների մեջ սողոսկած խորթ ու թշնամի տարրերին յերևան բերելու և կոլտնտեսություններից վտարելու համար:

Այսպիսի մի շարք սխալներ կատարվել են, և մեր ընկերները պետք է հասկանան, վոր յեթե մի վորևէ սխալ ենք թույլ տալիս կոլտնտեսային արտելի կանոնադրության դեմ՝ դեմոկրատիայի և այլ խնդիրների շուրջը, պետք է այդ սխալներն ուղղելու նախաձեռնությունն իրենց ձեռքը վերցնեն մեր գյուղական կոմունիստները, մեր կոլեկտիվ տնտեսության ղեկավարները, կոլտնտեսային ակտիվը, հակառակ դեպքում այդ սխալները կօգտագործվեն դասակարգային թշնամու կողմից՝ գյուղական մեր կադրերին վարկաբեկելու համար:

Այսպիսի փաստ յեղել է Վաղարշապատի շրջանում: Կոլեկտիվ տնտեսության վարչությունը թույլ է տալիս սխալներ: Կոլտնտեսականները մի քանի անգամ պահանջում են կոլտնտեսության նախագահի հաշվետվությունը, բայց այդ մարդն այնքան է կտրված մասսաներից, վոր վոչ միայն, անգամ այն ժամանակ, յերբ կոլտնտեսականները նրանից հաշվետվություն են պահանջում, չի տալիս, այլև ձգձգում է, ասում է, վոր ինքն իրավունք չունի հաշվետվություն տալու, վոր այդ հաշվետվությունը պետք է լինի շրջանային մաշտաբով, կամ պետք է համաձայնեցնի շրջանային հողբաժնի հետ և այլն: Յես գնում է շրջանային հողբաժնի վարիչի մոտ: Ի՞նչ եք կարծում, ի՞նչ է ասում այդ վարիչը: Ասում



է, վոր հաշվետվություն տալու հարկ չկա, վորովհետև այդ մասին կարգադրություն չկա, վոր նա կարող է միայն ընդհանուր ինֆորմացիա տալ: Իսկ յերբ կոլտնտեսության ժողով է հրավիրվում և նախագահն ուզում է «ինֆորմացիա» տալ,— կոլտնտեսականները պահանջում ու վորոշում են նախագահին հեռացնել իր պաշտոնից:

Սկզբում տեղի ընկերները չեն կարողանում քննադատության նախաձեռնությունն իրենց ձեռքը վերցնել և այդ հանգամանքից փորձում են օգտվել մի ինչ վոր նախկին դաշնակցական և մեկ ուրիշը, վորը հակահեղափոխական գործունեության համար աքսորված է յեղել և նոր է վերադարձել գյուղ: Պետք է պարզ ասել, վոր յեթե կենտրոնից յեկած ընկերները չօգնեյին տեղական կազմակերպությանը, չգլխավորեյին կոլտնտեսականների ճիշտ քննադատությունը կոլտնտեսության վարչության կոպիտ սխալների նկատմամբ, ապա այդ թշնամական տարրերը պետք է վոր կարողանային շահեյին, և մինչև անգամ, կարող եյին անցնել կոլտնտեսության ղեկավարության մեջ: Ի՞նչ է նշանակում այս փաստը. դա նշանակում է, վոր դեմոկրատիայի խախտումն այնքան սովորական է դարձել մեր կոլտնտեսություններում, վոր կոլտնտեսականների կարիքների, նրանց գրած խնդիրների հանդեպ անուշադիր վերաբերմունք են ցույց տալիս, վոր կոլտնտեսության նախագահը մինչև անգամ չի հասկանում, վոր յեթե կոլտնտեսականները նրանից պահանջում են հաշվետվություն, նա պարտավոր է հաշվետվություն տալ:

Սա նշանակում է այն, վոր մեր գյուղի կոմունիստները, մանավանդ այս շրջանում, յերբ նոր Սահմանադրությունը կյանքում կիրառելու հետևանքով լայն կերպով պետք է առաջ քաշվի, հրահրվի մեր

կոլտնտեսականների, աշխատավորների ակտիվությունը, պետք է խորապես փոխեն ղեկավարման մեթոդները, վորովհետև այլ կերպ այդ սխալներն անպայման կոգտագործեն մեր դասակարգային թշնամիները: Այս հիմնական խնդիրը պետք է լավ ըմբռնեն մեր ղեկավար ընկերները: Բոլշևիկյան ինքնաքննադատության լայն ծավալումով պետք է մինչև վերջը վերացնել բոլոր թերություններն ու թույլ տրված սխալները:

## ՀՈՂԱՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՅԵՎ ՀՈՂՈԳՏԱԳՈՐԾՄԱՆ ՀԱՐՑԵՐԸ

Հակահեղափոխական Ա. Ցերդնկյանը մի շարք տարիների ընթացքում հողային որգանների սիստեմում անց է կացրել կուլակային-խուտորային տնտեսություններ պատվաստելու գիծը, կոլտնտեսային կարգը քայքայելու գիծը:

Այսպես՝ Ապարանի, Աշտարակի, Ալավերդու, Վեդու և այլ շրջանների կոլտնտեսություններին հող հատկացնելիս մի շարք տեղերում անց է կացրել կոլտնտեսային մասիվները կտորատելու գիծը: Աշտարակի կոլտնտեսության մեջ մի բրիգադի ամրացրել էյին 32 տարբեր տեղերում գտնվող հողամասեր: Կոլտնտեսությունների համայնացված հողերը շրջապատված էյին բազմաթիվ կոլտնտեսականների տնամերձ հողամասերով:

Պարզ է, վոր այսպիսի պայմաններում դժվար էր աշխատանքի ճիշտ կազմակերպումը, առաջավոր ագրոտեխնիկայի արմատացումը և այլն:

Մի շարք շրջաններում (Ապարան, Ն. Բայազետ և այլն) հողերի բաշխումը կատարված է այնպես, վոր անհատական տնտեսություններին բաժին է ընկնում



ավելի շատ պիտանի հող (2,2 հեկտար), քան կոլեկտիվ տնտեսությանը (յերկու հեկտար): Պարզ է, վոր այդ կատարվել է կոլտնտեսային շարժման աճն արգելակելու, կոլտնտեսությունների տնտեսական ու քաղաքական զորությունը թուլացնելու նպատակով, կոլտնտեսական մասսաների մեջ կուսակցության ու կառավարության հանդեպ քաղաքական դժգոհություն առաջացնելու նպատակով:

Յեվ վերջապես՝ գյուղերի պլանավորման հարցը:

Պետք է ասել, վոր գյուղերի պլանավորման ու բարեկարգման գործում խոշոր թերություններ կան: Մեր տեղական կուսակցական կազմակերպություններն ինչպես հարկն է ընդհուպ չեն զբաղվել դրանով, վորի հետևանքով մեր գյուղերի պլանավորման գործում թույլ են տրվել բացահայտ անհեթեթություններ:

Մոսկվայի Կարմիր հրապարակը հազիվ թե լինի 4—6 հեկտար, իսկ Հոկտեմբերյան գյուղում մարդիկ ցանկացել են պատրաստել 14 հեկտար հրապարակ: (Ծիծաղ): Սա, ընկերներ, ծիծաղելի յե թվում ձեզ, բայց այս բանը պետք է հասկանային Հոկտեմբերյան շրջանի կուսակցական ընկերները, մանավանդ, վոր տեղում կան լավ ընկերներ, լավ կոլտնտեսականներ, սակայն նրանք չեն մտածել, թե ինչու պետք է Հոկտեմբերյանը 14 հեկտար տարածությամբ հրապարակ ունենա, մի հրապարակ, վորի համար պետք է քանդեյին ահագին այգիներ և մի շարք լավագույն բնակելի շենքեր:

Այսպիսի փաստեր քիչ չեն նաև մյուս շրջաններում, մասնավորապես բամբակացան շրջաններում: Այս բոլորը վկայում են, վոր հողային որգանները, մասնավորապես Հողժողկոմատը, անուշադիր, անհոգ վերաբերմունք են ունեցել կոլտնտեսություններն ամրացնելու կարևորագույն ձեռնարկումների նկատ-

մամբ, այս բոլորը վկայում են, վոր բթացել է հողժողկոմատի աշխատողների դասակարգային զգաստությունը, վորից և ոգտվեց դասակարգային թշնամին։

Մեր խնդիրն է հիմնավորապես զբաղվել կոլտնտեսային շինարարության կոնկրետ հարցերով, մինչև վերջը յերևան բերել սխալները և վճռաբար վերջ տալ հողային օրգանների կողմից կոլտնտեսությունները ղեկավարելու բյուրոկրատական մեթոդներին։

Վերցնենք այնպիսի մի կարևոր հարց, ինչպիսին է կոլտնտեսականների բողոքների քննումը։

Շրջանային կուսակցական և խորհրդային կազմակերպությունները, շրջանային հողբաժինների և մեքենատրակտորային կայանի ղեկավարները բավականաչափ ուշադիր չեն կոլտնտեսությունների ու կոլտնտեսականների բողոքների նկատմամբ, իսկ այդ բանը միայն ձեռնտու յե դասակարգային թշնամուն։

Այսպես է յեղել Վաղարշապատի, Աշտարակի, Հոկտեմբերյան, Ապարանի շրջանների մի շարք կոլտնտեսություններում, վորտեղ դասակարգային թշնամուն հաջողվել է ոգտագործել այն սխալները, վոր թույլ են տվել գյուղերի պլանավորման գործում, կոլտնտեսականներին տնամերձ հողամասեր հատկացնելու ասպարեզում և այլն։

Դասակարգային թշնամին ոգտվել է մեր կազմակերպությունների դանդաղկոտությունից, զգաստության բացակայությունից, մեր կազմակերպությունները չեն կարողացել արագորեն ուղղել գյուղատնտեսական արտելի կանոնադրության կիրառման ընթացքում թույլ տրված սխալները, չեն կարողացել ժամանակին մերկացնել կոլտնտեսությունների ղեկավարության մեջ բույն դրած դասակարգային թշնամուն, վորը նույնիսկ տեղ-տեղ, առանձին դեպքերում, նախաձեռնությունը խլում է տեղական ղեկավարության



ձեռքից։ Մեր շրջանային կուսակցական կազմակերպությունները, մանավանդ հողային օրգանները, պետք է լավ հաշվի առնեն այս հանգամանքը։

Ներկայումս, յերբ ընդունված է Ստալինյան Սահմանադրությունը․ յերբ մեր Միությունը վոտք է դըրել հետագա լայն դեմոկրատացման ճանապարհը և բոլոր հնարավորությունները ստեղծվել են ժողովրդական լայն մասսաների հետագա ակտիվացման համար, անհրաժեշտ է հատուկ զգաստություն, հատուկ հստակություն հողային օրգանների աշխատանքում։

Այժմ խոսենք գյուղատնտեսության առանձին ճյուղերի մասին։

## ՀԱՑԱՀԱՏԻԿԱՅԻՆ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆ

Հաշվետու ժամանակաշրջանում հացահատիկային ցանքերի բերքատվությունը զգալի չափով բարձրացավ․ 1936 թվականին հացահատիկի ցանքերի մեկ հեկտարից ստացվել է 11,9 ցենտներ բերք, 1934 թվի 8,4 ցենտների փոխարեն։

Աշտարակի, Թալինի, Կոտայքի, Բասարգեչարի, Լենինականի, Մարտունու շրջանները 1936 թվին մեկ հեկտարից ստացան 14 ցենտներ և ավելի բերք։ Այդ շրջանները ցույց տվին, թե կոլտնտեսություններում հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու համար դեռ վորքան չոգտագործված հնարավորություններ կան։

Վատ են աշխատում Ամասիայի, Ն. Բայազետի, Ախտայի, Ստեփանավանի շրջանները, վորոնք 1936 թվին մեկ հեկտարից ստացել են 9 ցենտներից վոչ ավելի բերք։

Հետաքրքրական է համեմատել հացահատիկի ընդհանուր բերքի մի շարք ցուցանիշներ։

| Թվականներ | Հացահատիկի ցանքերի տարածությունը միլիոն հեկտարներով | Մեկ հեկտարից ստացված բերքը ցենտներով |
|---|---|---|
| 1913 | 306,6 | 8,3 |
| 1919 | 78,4 | 6,5 |
| 1932 | 315,3 | 5,1 |
| 1934 | 369,4 | 8,4 |
| 1935 | 365,1 | 8,7 |
| 1936 | 359,1 | 11,9 |

1936 թվականին մենք ստացել ենք 26 միլիոն փութ հացահատիկ, այսինքն 7 միլիոն փութ ավելի, քան 1935 թվին, 23 միլիոն փութ ավելի, քան դաշնակների որոք և 10,3 միլիոն փութ ավելի, քան 1913 թվին:

Այս հաջողություններին մենք հասել ենք մեր դասակարգային թշնամիների՝ դաշնակների ու տրոցկիստների դեմ վճռական պայքար մղելու և կոլտնտեսային կարգի հաղթանակի հիման վրա: Մենք անշեղորեն կիրառել ենք կյանքում կուսակցության առաջնորդ ընկեր ՍՏԱԼԻՆԻ այն պատմական ցուցումը, թե անհրաժեշտ ե առաջիկա 3—4 տարիների ընթացքում հացահատիկի ընդհանուր բերքը Խորհրդային Միության մեջ հասցնել 7—8 միլիարդ փթի:

Առաջավոր կոմբայնավարների և կոմբայնավարուհիների 1935 թվականի խորհրդակցության ընկեր Ստալինն ասաց.

«Անասնապահության աճումն աներևակայելի յե առանց անասունների համար հատացահատիկի մեծ պաշար ունենալու: Միայն աճող և զարգացող հացա-



հատիկային տնտեսությունը կարող ե ստեղծել պայմաններ, վորոնք անհրաժեշտ են անասնապահության աճման համար»:

Ներկայումս մերկացված՝ ժողովրդի թշնամիներ, հակահեղափոխական-նացիոնալիստներ, տրոցկիստներ Յերզնկյանը, Յեսայանը և ուրիշները մի շարք տարիների ընթացքում բացահայտ կերպով դեմ են դուրս յեկել կոլտնտեսությունների հացահատիկային տնտեսության ամրապնդմանը:

Նրանք դեմ եյին մեր յերկրում սեփական հացահատիկային բազա ստեղծելուն, Հայաստանն սպառող հանրապետությունից արտադրող հանրապետության դարձնելուն:

Յերզնկյանը, Յեսայանը, Խանջյանը քարոզել են հացահատիկի կուլտուրան կրճատելու տեսակետ, ցանկացել են համոզել, վոր իբր թե մեր յերկիրն անասնապահական յերկիր ե: Մի շարք պլենումներում, կենտկոմի նիստերում, ակտիվի ժողովներում, մինչև անգամ համագումարում այդ վնասակար թեորիան մերկացվել ե: Յեվ չնայած մերկացումներին, նրանց հաջողվել եր անցկացնել իրենց վնասարարական գիծը և այդ վնասակար թեորիայի կիրառման հետևանքով մեր լեռնային շրջանների տնտեսությունը 1933—34 թ. թ. հասավ անկման: Պետք յեղավ Անդրյերկոմի միջամտությունը, նրա հատուկ վորոշումը, ռեալ ոգնությունը: Լեռնային շրջանները Համ. Կ(բ)Կ Անդրյերկոմի կողմից ամուր բոլշևիկյան կադրեր ուղարկվեցին: Այդ բոլորի շնորհիվ յերկու տարվա ընթացքում հիշյալ շրջաններն անցան առաջավորների շարքը: Մի ժամանակ Խանջյանը Համ. Կ(բ)Կ Անդրյերկոմի նիստում և այստեղ՝ Հայաստանի կազմակերպության մեջ լեռնային շրջանների այդ ծանր դրությունը փորձում եր բացատրել միայն տվյալ

տարվա բերքի պակասությամբ։ Բայց Անդրյերկոմի վորոշումը մերկացրեց այդ հակակուսակցական «թեորիան» և ցույց տվեց լեռնային շրջանների գյուղացիների տնտեսական վիճակի վատացման բուն պատճառները։

Շրջանների կոնկրետ պայմաններին մոտիկից ծանոթանալով՝ յերևաց, վոր Կենտկոմը, Հողժողկոմատը և մյուս օրգաններն այդ շրջանների վրա հարկ յեղած ուշադրություն չեն դարձրել, կադրեր չեն տվել, վորի հետևանքով կոլտնտեսություններն եյին խցկվել հակահեղափոխական դաշնակցական-տրոցկիստական տարրեր և վնասում եյին կոլտնտեսություններին։ Իհարկե այդպիսի պայմաններում չեր կարելի ղեկավարել գյուղատնտեսությունը, չեր կարելի տընտեսական վերելք ստեղծել այդ շրջաններում։ Հարկավոր եյին բոլշևիկյան կադրեր, վորպեսզի հնարավոր լիներ բոլշևիկորեն ղեկավարել այդ շրջանները, բոլշևիկորեն պայքարել հացի բերքի համար։ Հաղթահարելով ազգայնական-տրոցկիստական տարրերի դիմադրությունը, Հայաստանի բոլշևիկները՝ Համ. Կ(բ)Կ Անդրյերկոմի և մասնավորապես ընկեր Բերիայի ղեկավարությամբ ու օգնությամբ՝ կարողացան այդ շրջաններն առաջավոր դարձնել։

Մեր խնդիրն է չհանգստանալ ձեռք բերված առաջին հաջողություններով, ավելի առաջ տանել Հայաստանի հացահատիկային տնտեսության ամրապնդման գործը։

Յեթե մենք ամենամոտիկ ժամանակամիջոցում մի հեկտարի միջին բերքատվությունը հասցնենք 16 ցենտների, ապա լիովին կապահովենք Հայաստանի բնակչության հացահատիկի պահանջը և անհրաժեշտ քանակությամբ կերով կապահովենք նաև աճող անասնապահությունը։



Անհրաժեշտ է բոլոր կոլտնտեսություններում արմատավորել առաջավոր ագրոտեխնիկան, բոլշևիկյան պայքար ծավալել բարձր ու կայուն բերք ստանալու համար և հացահատիկային կուլտուրաների բարձր բերք ստանալու խնդիրը դարձնել ամեն մի կոլտնտեսության պատվի գործը։

Հատուկ ուշադրություն պետք է դարձնել սերմնաբուծության վրա, ինչպես նաև ցանքաշրջանառության կիրառման, մաքուր ցելերի ընդարձակման, սերմացուի գործի լավացման վրա։

Ի՞նչ է արվում այս բնագավառում։ Ցավոք սրտի, առայժմ շատ քիչ բան։ Հացահատիկի և բամբակի սերմացուի գործն այնքան է խճճված, վոր հարկ կլինի դեռ յերկար ժամանակ զբաղվել դրանով։

Այժմ մեր գիտական հաստատությունները և Հողժողկոմատը չունեն անհրաժեշտ կոնկրետ առաջարկներ, թե ինչ տեսակ հացահատիկներ կարելի և անհրաժեշտ է հանձնարարել մեր կոլտնտեսություններին։

Ժամանակն է, վաղուց ժամանակն է, վոր Հողժողկոմատը կոնկրետ կերպով զբաղվի սերմնաբուծության, սերմերի տեսակների փորձարկման հարցերով ու մոտալուտ տարիներում մեր կոլտնտեսություններին տա բարձր բերքատվություն ունեցող և ցրտակայուն ցորենի տեսակներ։

Անհրաժեշտ է հատուկ մտահոգության առարկա դարձնել աշնանացան ցորենի ցանքերի տարածությունն ընդարձակելու հարցը, վերջ դնել ցանքաշրջանառության վերաբերյալ անվերջ խոսակցություններին և կոնկրետ կերպով յուրաքանչյուր շրջանում յուրաքանչյուր կոլտնտեսության մեջ ձեռնարկել այդ անհրաժեշտ աշխատանքը։

# ՀԱՑԱՀԱՏԻԿԻ ԿՈՐՈՒՍՏԸ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԺԱՄԱՆԱԿ

Թվական տվյալներից չերևում է, որ 1936 թվին բերքահավաքի և կալի ժամանակ հացահատիկի կորուստը մեղանում բավականին մեծ է չեղել:

Այսպես, օրինակ, աշնանացան ցորենի մի հեկտար ցանքից ունեցել ենք 2,5 ցենտներ կորուստ, գարնանացան ցորենի ցանքի մի հեկտար ցանքից— 2,5 ցենտներ և գարնանացան գարու մի հեկտար ցանքից—2,34 ցենտներ: Կարճ ասած՝ հացահատիկային կուլտուրաների այս չերեք տեսակի գծով չեղած կորուստը հավասար է ընդհանուր բերքի 20 տոկոսին, այսինքն ամբողջ հանրապետության մեջ միայն այս չերեք կուլտուրաների ասպարեզում ունեցած կորուստը կազմում է մոտավորապես 810·000 ցենտներ հացահատիկ, որը մոտավորապես հավասար է ամբողջ հանրապետության մեջ ստացված աշնանացան ցորենի ընդհանուր բերքին:

Ի՞նչ գծերով են կատարվում այս կորուստները: Այս հարցին պատասխանում է հետևյալ աղյուսակը՝

| Արտում և կալում տեղի ունեցող կորուստների ու այլ անհաշիվ կորուստների տեսակները | Կորուստները ըստ կուլտուրաների (ցենտներներով) | | |
|---|---|---|---|
| | Աշնանացան ցորեն | Գարնանացան ցորեն | Գարնանացան գարի |
| Լավ չկալսելու հետևանքով հասկերի մեջ մնացած | 0,29 | 0,2 | 0,22 |
| Հարդի և մղեղի մեջ մնացած հացահատիկը | 0,08 | 0,12 | 0,06 |
| Կալի տակում մնացած | 0,26 | 0,14 | 0,21 |



| | | | |
|---|---|---|---|
| Կալում անասունների և թռչունների կերածը | 0,28 | 0,42 | 0,35 |
| Այլ կորուստներ կալում | 0,26 | 0,32 | 0,22 |
| Արտում թողած հասկերը և կալ բերելիս ճանապարհին թափած հացահատիկները | 0,86 | 0,65 | 0,89 |
| Արտում կալսած հացահատիկ անասունները կերել են | 0,18 | 0,05 | 0,1 |
| Արտում անասունները կերել են չկալսած հացահատիկ | 0,12 | 0,08 | 0,25 |
| Արտում տեղի ունեցած կորուստների այլ տեսակները | 0,17 | 2,05 | 2,34 |
| Ընդամենը | 2,50 | 2,05 | 2,34 |

Կորուստներն առանձնապես մեծ են Դիլիջանի շրջանում, որտեղ գարնանացան գարու կորուստները կազմում են մեկ հեկտարից 6,41 ցենտներ: Միայն բերքահավաքի ժամանակ արտում թողնված հասկերից առաջացած կորուստները կազմում են 2,23 ցենտներ:

Կորուստները մեծ են նաև Բասարգեչարի, Վեդու և Հոկտեմբերյան շրջանում, որտեղ միջին կորուստը մեկ հեկտարից հասնում է 3,3 ցենտների:

Ինչպես վերոհիշյալ տվյալներից չերևում է, հացահատիկի կորուստները հիմնականում տեղի չեն ունենում հասկերն արտում մնալու պատճառով: Ընդամենը կատարվող բերքահավաքը և բերքը կալ փո-

խադրելը պետք է կանխեն բերքի այս կարգի կորուստները:

Մեծ է նաև լավ չկալսելու հետևանքով հասկի մեջ թողված հացահատիկի քանակը: Այս բանը պետք է վերագրել հիմնականում կալսիչների ու սերմազտիչների վատ աշխատանքին:

Կորուստների դեմ պայքարելու տեսակետից եյական նշանակություն ունի ցանքը ժամանակին կատարելը, լավ բերքահավաքը և բերքահավաքի աշխատանքների մեքենայացումը:

Շատ վատ է դրված մեզ մոտ ՄՏ կայանների ղեկավարությունը: Մինչև վերջին ժամանակները այս կարևորագույն բնագավառը Հողժողկոմատի կողմից դիմազրկված եր: ՄՏ կայանների արտադրական և ֆինանսական ամրապնդման վերաբերյալ միջոցառումների մասին կայացրած իր վորոշման մեջ Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմը մատնանշեց այն խոշորագույն թերությունները, վոր ունի Հողժողկոմատը ՄՏ կայանների ղեկավարության գործում: Դրանից Հողժողկոմատը պետք է համապատասխան յեզրակացություններ անի:

ՄՏ կայանները 1936 թվականն ավարտեցին արտադրական անբավարար ցուցանիշներով և տնտեսաֆինանսական աշխատանքի վատ հանրագումարներով: ՄՏ կայանների աշխատանքի արտադրողականությունը ցածր է: Մեքենայական-տեխնիկական պարկն աշխատում է թերի բեռնվածությամբ, տրակտորային աշխատանքի ինքնարժեքը բարձր է, վառելանյութի խնայողության համար պայքար չի մղվում:

Մեր շրջանային կուսակցական կազմակերպությունները ինչպես հարկն է չեն ղեկավարում ՄՏ կայանները, չեն թափանցում նրանց տնտեսական-արտադրական աշխատանքի բոլոր մանրուքների մեջ, այդ պատճառով էլ կոնկրետ ղեկավարությունը թույլ է:



1937 թվին մենք պետք է վճռականապես վերացնենք ՄՏ կայաններում գոյություն ունեցող թերությունները և հասնենք այն բանին, վորպեսզի ՄՏ կայանները դառնան կոլտնտեսությունները ղեկավարող օրինակելի պետական ձեռնարկություններ:

## ԱՆԱՍՆԱՊԱՀՈՒԹՅՈՒՆ

Վերջին տարիների ընթացքում Հայաստանը ձեռք է բերել մի շարք հաջողություններ անասնապահության բնագավառում:

Հաշվետու ժամանակաշրջանում խոշոր յեղջերավոր անասունների աճը կազմել է 170,2 հազար գլուխ, մանր յեղջերավոր անասունների աճը 425,9 հազար գլուխ, խոզերի աճը՝ 38,3 հազար գլուխ և ձիերի աճը՝ 5,3 հազար:

Վերջին տարիների ընթացքում անասնապահության ասպարեզում ունեցած մեր նվաճումներից մեկն ել անասունների տեսակարար կշռի աճումն է կոլտնտեսություններում: Խոշոր յեղջերավոր անասունների ընդհանուր թիվը կոլտնտեսություններում յերեք տարվա ընթացքում ավելացել է 220 տոկոսով:

Վոչխարների և այծերի հոտերը կոլտնտեսություններում աճել են 237 տոկոսով, իսկ խոզերինը՝ 179 տոկոսով:

Մետիսացումը Հայաստանում լայն մասշտաբով կիրառվել սկսվել է 1936 թվից:

1936 թվականի ընթացքում նրբամաղ և կարակուլի տեսակի վոչխարների միջոցով մետիսացվել են 70·000 կոշտ բուրդ ունեցող վոչխարներ. մետիսացվել է 41·700 գլուխ խոշոր յեղջերավոր անասուն:

1937 թվականին մետիսացմանը տրվում է լայն թափ: Այս թվին մետիսացվելու յեն 78·000 գլուխ խոշոր յեղջերավոր անասուն, 236 հազար գլուխ վոչ-

խար, այդ թվում արհեստական բեղմնավորման միջոցներով 155 հազար գլուխ:

Ընթացիկ տարում Խորհրդային Հայաստանի շրջանները ներմուծում են մեծ քանակով ազնվացեղ անասուններ—ազնվացեղ ցուլիկներ սիմենտալի և շվից ցեղի՝ 4.800 գլուխ, «ռամբույյե», «պրեկոս» ցեղի ազնիվ տեսակի խոյեր՝ 1200 գլուխ:

Չնայած ձեռք բերված հաջողություններին, անասունների աճման տեմպը 1936 թվին համեմատաբար նվազել է: 1934 թվին խոշոր եղջերավոր անասունների քանակն ավելացել է 115,2 տոկոսով, 1935 թվին՝ 111,8 տոկոսով, իսկ 1936 թվին՝ 105,5 տոկոսով, ինչ վերաբերում է խոզերին, 1936 թվին այստեղ աճ չի եղել:

Դրա հետևանքով անասնապահության զարգացման պետական պլանը 1936 թվականին մի քանի ցուցանիշներով չկատարվեց: Օրինակ,—

Պետական պլանը կատարված է

Ձիերինը՝ 90,5 տոկոսով,

Խոշոր եղջերավոր անասուններինը՝ 94,0 տոկոսով,

Մանր եղջերավոր անասուններինը (կոլտնտեսություններում)՝ 110,9 տոկոսով,

Խոզերինը (կոլտնտեսություններում)՝ 79,0 տոկոսով,

Մատղաշի աճեցման գծով

Հորթերի աճեցումը՝ 94,7 տոկ.,

Մտրուկների աճեցումը՝ 66,5 տ.,

Գառների և ուլերի աճեցումը՝ 105,1 տոկոսով,

Խոճկորների աճեցումը՝ 64,8 տոկոսով:

Այս բոլորը վկայում են Հողժողկոմատի, շրջանային կուսակցական կազմակերպությունների և հողային օրգանների վատ աշխատանքի մասին, մասնա-



վորապես անասնապահության գծով: Հատկապես վատ են աշխատում Գորիսի ընկերները:

Հետ է մնում հատկապես ձիաբուծությունը: Անասնապահության այս ճյուղում պետական պլանները համարյա ամեն տարի թերակատարվում են: Չնայած ձիերի խնամքը լավագույն ձևով կազմակերպելու, մատղաշի պահպանման, զամբիկներին աշխատանքից ազատելու վերաբերյալ Կենտկոմի և Ժողկոմխորհի մի ամբողջ շարք վորոշումների՝ այնուամենայնիվ շրջանային կազմակերպություններն ու հողային օրգանները շարունակում են չկիրառել այդ վորոշումները և անխույժ վերաբերմունք ցույց տալ ձիաբուծության զարգացման խնդիրներին:

Ուշադրություն չի դարձված ջորեբուծության զարգացմանը, վորը մեծ նշանակություն ունի Հայաստանի համար:

Անհրաժեշտ է նշել նույնպես անասնապահության ասպարեզում տեղի ունեցած վնասարարությունը, վորը կատարվել է անասնապահության զարգացման սխալ պլանավորման, անասունների համար կառուցվող անպետք շենքերի, անասունների մեռխացմանը դիմադրելու, անկման դեմ մղվող պայքարում անասնաբուժական ֆրոնտի առանձին աշխատողների կողմից հանցավոր վերաբերմունք ցուցաբերելու ուղղությամբ: Անասունների մասսայական համաճարակների դեմ ավելի ուժեղ պայքար մղելու վերաբերյալ գիտական աշխատողների արժեքավոր առաջարկները Հողժողկոմատի կողմից տարիներով չեն քննարկվել:

Տեղական կազմակերպությունները դեռևս բավականաչափ ուշադրություն չեն ցույց տալիս անասունների մթերատվության ավելացման համար՝ անասնապահության առաջավորների նախաձեռնությամբ սկսված պայքարին:

Անասունները արոտներում պահելու գործը վատ է կազմակերպված: Արոտատեղիներն ամրացված չեն կոլտնտեսություններին: Վատ է կազմակերպված քոչվորական վայրերի անասունների զոոտեխնիկական և անասնաբուժական սպասարկումը: Անհրաժեշտ է ամրացնել քոչի շրջաններում աշխատող անասնաբուժական ջոկատները՝ կոմպլեքսային նախազգուշական միջոցառումներ կիրառելու համար:

Անասունների բուժսպասարկման գործը մեր աշխատանքի հետամնաց ճակատամասերից մեկն է, վորովհետև Հողժողկոմատը, շրջանային գործադիր կոմիտեները և հողային մարմիններն այս գործին արժանի ուշադրություն չեն դարձնում:

Անասնաբուժական աշխատանքը մեծ մասամբ թողնված է միայն անասնաբույժ աշխատողներին. նրանց անհրաժեշտ օգնություն ցույց չեն տալիս և անասնաբուժական գործում սիստեմատիկ վերահսկողություն չկա:

Անհրաժեշտ է 1937 թվին մի շարք անասնապահական—առողջապահական և անասնաբուժական—սանիտարական միջոցառումներով ամրապնդել այն արդյունքները, վորոնց հասել ենք 1936 թվին՝ խոզերի ժանտախտի լիկվիդացիայի գործում:

Կերաբույսերի աճումը և առաջին հերթին լոբիանման խոտերի (լյուցերնայի) քանակի ավելացումը կուլտուրական կերի կայուն բազա ստեղծելու համար կենսական անհրաժեշտություն է:

Կերաբույսերի կուլտուրայի տարածությունն ընդարձակելու գործն արգելակող պատճառները պետք է հայտնաբերել, լիկվիդացիայի ենթարկել, հատկապես ուշադրություն դարձնելով շրջանները խոտաբույսերի սերմացուով ապահովելու գործին:

Հայաստանի բոլշևիկների առաջ խնդիր է դրված՝



1937 թվականին մոբիլիզացիայի ենթարկել բոլոր կուսակցական և խորհրդային կազմակերպությունների, կոլտնտեսականների լայն մասսաների, անասնապահության ստախանովականների և առաջավորների ու անասնապահության բոլոր մասնագետների ուշադրությունն անասնապահության զարգացման 1937 թվականի պետական պլանը բոլոր ցուցանիշներով կատարելու և գերակատարելու վրա:

## ՀԱՆՈՒՆ ԲԱՄԲԱԿԻ ԲԱՐՁՐ ԲԵՐՔԻ

Բամբակի ֆրոնտում Հայաստանի բոլշևիկները խոշոր նվաճումներ ունեն, այդ մասին են վկայում հետևյալ թվերը:

| | 1933 թ. | 1934 թ. | 1935 թ. | 1936 թ. |
|---|---|---|---|---|
| Ցանքի տարածությունը հեկտարներով | 25·035 | 18·577 | 18·000 | 18·000 |
| Մի հեկտարից ստացած բերքը ցենտներով | 5·25 | 7,65 | 10·14 | 12·7 |
| Ընդհանուր բերքը տոններով | 13·163 | 14·205 | 18·261 | 22·500 |

Այսպիսով բամբակի բերքը յուրաքանչյուր հեկտարից 1936 թվին հասցրել ենք մինչև 12,7 ցենտների, 1933 թվի 5,25 ցենտների դիմաց: Այդ թվերը հետաքրքրական են և այն տեսակետից, վոր յեթե 1933 թվին Հայաստանն ունեցել է 25·000 հեկտար բամբակ և ստացել է միայն 13·163 տոնն բամբակ, ապա 1936 թվին ունենալով 18·000 հեկտար, այսինքն 7·000 հեկտար ավելի պակաս քան 1933 թվին, ստացել է 22·500 տոնն բամբակ:

Առաջավոր կոլտնտեսությունները, բրիգադները և օղակները 1936 թվականին ստացել են միջին հանրապետական բերքից շատ ավելի բարձր բերք: Այսպես օրինակ, 13 կոլտնտեսություն մի հեկտարից ստացել են 15-ական ցենտներ, 28 կոլտնտեսություն 15 ցենտներից ավելի, 14 կոլտնտեսություն 18 ցենտներից ավելի և 8 կոլտնտեսություն— հեկտարից 21 ցենտներից ավելի բերք:

Առանձին բրիգադներ, օղակներ և առաջավոր ստախանովական բամբակագործներ տվել են բամբակի համար մղվող պայքարի ռեկորդային ցուցանիշներ: «Մայիսի 1-ի» անվան կոլտնտեսության օղակավար (Ղամարլուի շրջանի Ջահրաբլու գյուղ) Վարինկա Փանոսյանը 1936 թվին մեկ հեկտարից ստացել է 47 ցենտներ բամբակ:

Հայաստանի կուսակցական կազմակերպությունները ջախջախելով հայ նացիոնալիստների հակահեղափոխական փտած թեորիան, վորն ուղղված էր բամբակի դեմ, հասան այն բանին, վոր բամբակագործական շրջանների կոլտնտեսություններն ամուր վոտքով կանգնեցին ունևոր ճանապարհի վրա:

Մենք պետք է պայքարենք այն թեորիայի դեմ, վորը կա մի քանի մարդկանց գլուխներում և բամբակացան շրջանների մի շարք ընկերների մեջ, թե վորքան քիչ ցանենք բամբակը, բերքն ավելի շատ կստանանք:

Դա սխալ է: Մեր խնդիրը կայանում է նրանում, վորպեսզի բամբակի ցանքատարածությունը լայնացնենք և բարձրացնենք ամեն մի հեկտարից ստացվող բերքը: Մենք կարող ենք կոնկրետ խնդիր դնել, վոր առաջիկա 1—2 տարվա ընթացքում բամբակի ցանքատարածությունը լայնացնենք մինչև 20



հազ. հեկտ.: Պետք է աշխատենք, վոր բերքատվությունը 1937 թվին հանրապետության մեջ հասցնենք միջին հաշվով մեկ հեկտարին մինչև 15 ցենտներ: Այդ հնարավորությունը մենք ունենք, վորովհետև 1936 թ. ընթացքում մենք ունեյինք շատ կոլտնտեսություններ, վորոնք տվել են 15—18 ցենտներ և 8 կոլտնտեսություններ տվել են հեկտարից 21 ցենտներից ավելի բերք: Կան այնպիսի բրիգադներ, վորոնք մեկ հեկտարից տվել են 30—35 ցենտներ բամբակ, իսկ կա մի օղակ Ջահրաբլու գյուղում՝ Վարինկա Փանոսյանի օղակը՝ վորը մի հեկտարից ստացել է 47 ցենտներ: Ընկերներ, տեսնում եք, ամեն ինչ կախված է աշխատանքից: Յեթե Ջահրաբլու գյուղում Վարինկա Փանոսյանը կարողացել է 47 ցենտներ բերք տալ հեկտարից, ապա ուրեմն, յեթե մասսայական աշխատանքները բերքի բարելավման տեսակետից լայնորեն ծավալենք, իհարկե այն խնդիրը, վորի մասին յես ասացի, շատ հեշտ լուծելի խնդիր կլինի:

Այժմ բամբակի 1937 թվի պլանի համար մղվող պայքարի ամենապատասխանատու շրջանն է:

Հարկավոր է ամենալուրջ ուշադրություն դարձնել բամբակը ջրելու և բամբակի մշակության գործը ճիշտ կազմակերպելու վրա:

Բամբակի ցանքերի ճիշտ ու ժամանակին մշակումը և խնամքը այն լծակներն են, վորոնք ապահովելու յեն բերքատվության բարձրացումը:

## ԱՎԵԼԻ ՄԵԾ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ԽԱՂՈՂԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ՅԵՎ ՊՏՂԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԻՆ

Մեծ ուշադրություն պետք է դարձվի խաղողի և պտղատու այգիների զարգացման վրա: Այդ խնդիր-

ները յերեսի վրա յեն թողված յեղել անցյալ շրջանում: Հայաստանի հակահեղափոխական նացիոնալիստները բամբակի դեմ պայքարելու հետ միասին այն վնասակար թեորիան են տարածել, վոր իբր թե դրանք այնպիսի կուլտուրաներ չեն, վոր հարկավոր լինեն Հայաստանի ժողտնտեսությանը. նրանք քիչ ուշադրություն են դարձրել այգեգործության վրա: Մենք մի շարք տարիների ընթացքում չափազանց մեծ կորուստ ենք ունեցել այգեգործության ասպարեզում: Պտղատու այգիների տարածությունն այդ տարիների ընթացքում կրճատվել է, բերքատվությունն ընկել է, միայն վերջին մի քանի տարիների ընթացքում է, վոր աշխատանքներն ուժեղացել են այդ ասպարեզում: Միայն 1936 թ. է սկսվել իսկական աշխատանքն այգեգործության բարձրացման համար: 1936 թվի հունվարի 1-ին պտղատու այգիների տարածությունը Հայաստանում կազմում եր 10.685 հեկտար, իսկ խաղողի այգիների տարածությունը 11.865 հեկտար: 1934–35 թվականների ժամանակամիջոցում Հայաստանում տնկվել է 3933 հեկտար նոր պտղատու այգի և 2244 հեկտար խաղողի նոր այգի: Միայն 1936 թ. աշնանը և 1937 թվի գարնանը Հայաստանում տնկված է 1914 հեկտար պտղատու նոր այգի և 1037 հեկտար խաղողի այգի:

Խաղողի և պտղատու այգիների բերքը վերջին տարիների ընթացքում շարունակում է ցածր մնալ: Միջին հաշվով պտղատու այգիների մի հեկտարից ստացվում է 65 ցենտներ բերք, իսկ խաղողի մեկ հեկտար այգուց 50—55 ցենտներ, մինչդեռ Աշտարակի, Ղամարլուի և Ալավերդու շրջանների առաջավոր կոլտնտեսությունները 1936 թվին միջին հաշվով խաղողի և պտղատու այգու յուրաքանչյուր հեկտարից ստացել են 100-ական ցենտներ բերք:



Այս թվերն ասում են, վոր աշխատանքի այս ճակատամասին համապատասխան ուշադրություն չի դարձվել: Միայն այն ժամանակ, յերբ Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմը կոնկրետ կերպով զբաղվեց այս հարցով, հաջողվեց համեմատաբար կարճ ժամանակամիջոցում առաջ տանել այս կուլտուրայի զարգացումը: Կենտկոմը մի շարք վորոշումներ է կայացրել այգիների զարգացման համար համապատասխան բազա ստեղծելու վերաբերյալ:

Բայց այս միայն գործի սկիզբն է: Մենք ունենք այս կուլտուրաները հանրապետության բոլոր շրջաններում զարգացնելու բոլոր հնարավորությունները: Բայց կան շրջաններ, վորոնք կարծում են, վոր պտղաբուծությունը իրենց չի վերաբերում, իրենք լեռնային են և լեռնային գոտում պտղատու ծառեր չեն կարող բուսնել: Այս կարծիքը սխալ է: Կան բոլոր հնարավորությունները, հարկավոր է միայն, վոր Հողժողկոմատն ավելի կոնկրետ, ավելի լավ ղեկավարի այդ աշխատանքները, և ինձ թվում է, վոր մենք կարող կլինենք մոտակա տարիների ընթացքում այգեգործությունն ու պտղաբուծությունն ավելի զարգացնել:

Շրջանային կուսակցական կազմակերպություններին և հողային մարմինների առաջ մենք կոնկրետ և մեծ խնդիր ենք դրել՝ 1936 թվի աշնանը և 1937 թվի գարնանն ոգնել կոլտնտեսականներին, վորպեսզի նրանք յուրաքանչյուր տնամերձ հողամասում տնկեն առնվազն 10—15 պտղատու ծառ, ինչպես նաև խաղողի վազեր:

Այս խնդիրն իրագործվա՞ծ է արդյոք:

Այս խնդիրը հեռու չէ իրագործված լինելուց:

Մինչդեռ կոլտնտեսականները մեծ ձգտում ունեն այս ուղղությամբ. Դժբախտությունն այն է, վոր

մեր հողային մարմիններն անկարող չեղան այս աշխատանքները կազմակերպել և գլխավորել: Այս գործին պետք է ձեռնարկել ավելի կոնկրետ կերպով, քան մինչև այժմ ձեռնարկվել է:

Շրջգործկոմների նախագահները, շրջանային հողբաժինների վարիչները, ՄՏ կայանների դիրեկտորներն այս գործով պետք է զբաղվեն անձամբ և այն չհանձնարարեն յերկրորդական աշխատողներին:

Անհրաժեշտ է, որպեսզի մոտակա յերկու—յերեք տարվա ընթացքում մեր շրջաններն ապահովենք անհրաժեշտ քանակությամբ սեփական տնկերով, այն էլ ոչ միայն կոլտնտեսությունների, այլև կոլտնտեսականների համար:

Առանձնապես սուր կերպով է դրված Փիլոքսերայով վարակված այգիների տարածության վերականգնումը և ընդարձակումն Իջևանի, Ալավերդու և Շամշադինի շրջաններում, որտեղ ընթացիկ տարում, կազմակերպվում է ջերմոցային տնտեսություն՝ ամերիկյան փորթեր պատվաստելու համար: Պետք է կազմակերպել ու ամրացնել սեփական տնկարանային տնտեսությունը, մի բան, որ մեր կազմակերպությունները և մանավանդ հողային օրգանները և Հողժողկոմատը թերագնահատում են: Մեր հողային մարմինները պետք է ավելի ակտիվ կերպով զբաղվեն չորային մերձարևադարձային մշակույթների զարգացման հարցով, քան մինչև այժմ զբաղվել են:

Վերջին տարիների փորձը ցույց տվեց, որ Իջևանի, Միկոյանի, Աշտարակի, Ալավերդու և Ազիզբեկովի շրջաններում կան այդ մշակույթները զարգացնելու համար անհրաժեշտ բոլոր պայմանները: Այդ մշակույթների թվին են պատկանում՝ նուռը, թուզը, տակառներում աճեցրած լիմոնը և այլն:

Մենք վատ ենք զբաղվում Կոնսերվտրեստի և «Ա-



րարատ» տրեստի պտղատու և խաղողի խորհրդային տնտեսություններն ամրացնելու հարցերով: Այդ խորհտնտեսությունների մեծահարուստ հնարավորությունները մենք բավականաչափ չենք օգտագործել: Սննդարդյունաբերության ժողկոմատն ամենակարճ ժամանակամիջոցում լրջորեն պետք է զբաղվի այդ խորհտնտեսություններով և դրանք դարձնի օրինակելի կուլտուրական և բարձր բերք տվող տնտեսություններ:

## ԾԽԱԽՈՏԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ

Մինչև Հայաստանի խորհրդայնացումը մեզ մոտ մշակվում էր միայն ծխախոտի տեղական տեսակը, այսպես կոչված «դուշլաշարը», այն էլ ընդամենը 200—250 հեկտար տարածությամբ: Միայն խորհրդային իշխանության օրոք ծխախոտագործությունը մեզ մոտ սկսեց զարգանալ, և ներկայումս ծխախոտի ցանքատարածությունն արդեն հասել է 2600 հեկտարի:

Իջևանի, Կոտայքի և Ղափանի մի շարք կոլտնտեսություններում ծխախոտագործությունը դարձել է առաջատար ճյուղ և մեծ դեր է խաղում կոլտնտեսությունների յեկամուտի ասպարեզում:

Ցանքի տարածության ավելանալու հետ մեկտեղ, ավելացել է նաև ծխախոտի բերքատվությունը. 1934 թվին մեկ հեկտար ցանքից ստացվել է 6,6 ցենտներ ծխախոտի բերք, 1935 թ.՝ 8,1 ցենտներ, իսկ 1936 թ.՝ 10,5 ցենտներ:

Առանձին կոլտնտեսություններ 1936 թվին տվել են Միության մասշտաբով ռեկորդային բերք: Օրինակ, Կոտայքի շրջանի Թաղա գյուղի կոլտնտեսությունը մեկ հեկտարից տվել է 23,26 ցենտներ բերք, Բաշգյուղի կոլտնտեսությունը՝ 20,23 ցենտներ, Շամ-

շաղինի շրջանի Բերիայի անվան կոլտնտեսությունը՝ 16 ցենտներ բերք և այլն:

Ծխախոտագործական շրջանների կուսկազմակերպությունները և հողային օրգանները մեծ աշխատանք պետք է ծավալեն ծխախոտի բոլոր ագրոտեխնիկական միջոցառումները կիրառելու համար, այն հաշվով, վորպեսզի հասնեն ծխախոտի կայուն և բարձր բերքատվության, վորպեսզի ավելի կուլտուրական ձևով կազմակերպեն ու առաջ տանեն այս արժեքավոր տեխնիկական կուլտուրայի զարգացումը: Հարկավոր է օգտագործել ծխախոտի մշակույթի տարածությունները ե՛լ ավելի ընդարձակելու բոլոր հնարավորությունները:

## ՃԱԿՆԴԵՂ

Ճակնդեղը նույնպես կարևոր կուլտուրա յե: Հայաստանի յերեք շրջաններում մոտ 800 հեկտար ճակընդեղ ենք ցանում, վորն, իհարկե, քիչ է, այնինչ մենք գիտենք, վոր ճակնդեղի ցանքը ևս չափազանց մեծ նշանակություն ունի մեր կոլտնտեսականների նյութական դրությունը բարելավելու տեսակետից: Վորպեսզի կարողանանք առաջիկա տարիներում հումքով ապահովել Լենինականում կառուցվող շաքարի գործարանը, հարկավոր է ճակնդեղի տարածությունն ավելացնել 2500 հեկտարով:

Շաքարի ճակնդեղի բերքատվությունն առայժմ ցածր է. 1934 թվին հեկտարից ստացվել է 94.1 ցենտներ, իսկ 1936 թվին — 181.2 ցենտներ: Պետք է բարձրացնել բերքատվությունը՝ հասցնելով այն Ուկրաինայի բերքի մակարդակին:

Հարկավոր է ամենամոտիկ ժամանակներս լուծել շաքարի ճակնդեղի ցանքատարածության հետագա ընդարձակման հարցը, պետք է բարձրացնել բերքատու-



վությունն այն հաշվով, վորպեսզի 3-րդ հնգամյակում լրիվին ապահովվի գործարանի հումքի պահանջը:

Յերկու խոսք կարտոֆիլի մասին: Պետք է՞ ասել, վոր առհասարակ բանջարաբուծությունը հետ է մնում մեզ մոտ, մասնավորապես կարտոֆիլի բերքատվությունը: Քիչ է բերք տալիս կարտոֆիլը և Հողժողկոմատն էլ ուշադրություն չի դարձնում այս խնդրի վրա:

1936 թիվը մենք շատ անբավարար ավարտեցինք. կարտոֆիլի բերքը մեկ հեկտարից ամբողջ հանրապետության մասշտաբով ստացանք 45—50 ցենտներ, հնարավոր 100—110 ցենտների դիմաց:

Կարտոֆիլի կուլտուրան մասսայաբար վարակված է յեղել այսպես կոչված ֆիտոֆարով:

Մեր առջև խնդիր է դրված՝ ագրոտեխնիկայի համապատասխան միջոցառումներով ապահովել կարտոֆիլի և այլ բանջարեղենների բերքատվության բարձրացումը և ցանքատարածությունների ընդարձակումը:

## ՇԵՐԱՄԱՊԱՀՈՒԹՅՈՒՆ

Շերամապահության հետագա զարգացման հարցերով պետք է ընդհուպ զբաղվել. Հատկապես պետք է զբաղվել թթենիների տնկումն ուժեղացնելու հարցերով վորպես շերամապահության համար կերի բազա:

Հողժողկոմատը, Մետաքստրեստը, շրջանային կուսակցական կազմակերպությունները պետք է վճռականորեն վերակառուցեն իրենց աշխատանքը թթենու մշակության ասպարեզում:

Մոտակա տարիներում վճռականորեն պետք է վերացվեն վնասարարության մնացորդները մետաք-

տնտեսության ասպարեզում, վնասարարություն, որն արտահայտվում էր կերի բազան մասսայաբար ոչնչացնելու մեջ. պետք է կերի ամուր բազա ստեղծել շերամապահության հետագա զարգացման համար:

## ԱՆՏԱՌԱՅԻՆ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆ

Մի քանի խոսք անտառատնկման ու անտառների վերականգնման մասին: Հայաստանի անտառային ֆոնդի ընդհանուր տարածությունը հասնում է 300.000 հեկտարի, որը կազմում է ամբողջ տերիտորիայի մոտ 10 տոկոսը (մոտավորապես 100 հազար հեկտարը ներկայացնում են թփուտներ և նոսր անտառները): Իսկ անհարմար ու օգտագործման համար անպետք հողերի տարածությունը կազմում է մոտ կես միլիոն հեկտար, որոնց զգալի մասն ունի խիստ կտրտված ռելյեֆ, որի հետևանքով անխուսափելի յեն հեղեղները:

Այդ հեղեղները հսկայական վնաս են հասցնում գյուղատնտեսությանը: Հայտնի յե, որ անտառազուրկ շրջաններում հեղեղներ տեղի յեն ունենում ավելի հաճախ, ավելի ինտենսիվ կերպով: Անտառների բացակայությունը բացասաբար է ազդում նաև գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության վրա հատկապես այն շրջաններում, որտեղ ուժեղ են քամիները:

Հայաստանում յեղած անտառները գյուղատնտեսությանը չեն պաշտպանում վերոհիշյալ յերևույթներից: Անտառի պահանջը մեզանում հսկայական է, անհրաժեշտ է անտառատնկման աշխատանքներ կա-



տարել բոլոր շրջաններում, առաջին հերթին՝ անտառազուրկ լեռնային շրջաններում, որտեղ անտառը բացառիկ նշանակություն ունի:

Մեզ մոտ այդ բնագավառում մինչև այժմ անայնագործությամբ են զբաղվել, գոյություն ունի այդ կարևորագույն ձեռնարկման լրակատար թերագնահատում, մինչդեռ մեր տնտեսության այդ ճյուղն ունի պետական, ժողովրդատնտեսական բացառիկ նշանակություն: Հարկավոր է բոլշևիկորեն ձեռնամուխ լինել պետական ֆոնդի հողերում ու կոլտնտեսություններում անտառային նոր մասիվներ ստեղծելուն, անտառամելիորատիվ աշխատանքների կիրառմանը, լեռնալանջերի ու ձորերի ամրացմանը: Հարկավոր է կոլտնտեսությունները ներգրավել այդ մեծ աշխատանքի մեջ: Մեր խորհրդային ու հողային օրգանները, ինչպես հանրապետական, այնպես էլ շրջանային, առայժմ չափազանց վատ են աշխատում այս ուղղությամբ:

## ՋՐԱՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ

Յերկու խոսք ջրաշինարարական ձեռնարկումների մասին:

Ընկերնե՛ր, վնասարարություն կարելի յե համարել ժողովրդական տնտեսության այս ասպարեզում կատարված աշխատանքները: Հայտնի յե, որ Ղուրի շինարարության ասպարեզում գոյություն ուներ աչքակապություն, կային թաքցրած գումարներ և վերջապես ծախսված էր 41 միլիոն ռուբլի, որը շատ քիչ եֆեկտ է տվել: Կենտրոնական Կոմիտեն հակահեղափոխական Այվազյանին աշխատանքից հեռացնելու հետ միասին, մի շարք միջոցառումներ ձեռք առավ ջրաշինարարության վիճակը բարելավելու հա-

մար: Հայաստանում մանավորապես վերջին յերկու տարիների ընթացքում մանր ջրաշինարարական աշխատանքների գծով բավական գործ ենք կատարել:

Մինչև 1934 թվականը մանր իրիգացիոն շինարարության գծով ընդամենը յուրացված է յեղել 6623 հեկտար, իսկ 1934 թ.-ից մինչև 1937 թ. հունվարի մեկը, շնորհիվ ջրատնտեսական աշխատանքներում կոլտնտեսականների մասսայական մասնակցության, յուրացվել է 14.900 հեկտար նոր հող:

Պետք է նշել, վոր գետերի վոռոգման ուղղությամբ կատարվող շինարարությունը, նախագծման և շինարարության ղեկավարման ապարատում թույլ տրված խոշոր սխալների հետևանքով, ուժեղ կերպով ձգձգվեց, թանկացավ և նախահաշվային արժեքի՝ 18 միլիոն ռուբլու դիմաց հասավ 40 միլիոն ռուբլու:

Մանր ջրատնտեսական շինարարության պլանի համաձայն 1937 թվականին մենք պետք է ջրովի դարձնենք 12.000 հեկտար նոր հողեր և վոռոգենք մոտ 6000 հեկտար արոտատեղ:

Ըստ վորում անհրաժեշտ է հաշվի առնել, վոր մենք 1937 թվականի պլանի մեջ ունենք այնպիսի կարևոր ու դժվար օբյեկտներ, ինչպես՝ Այնաձորի (Միկոյանի շրջան), Նալբանդի (Լենինականի շրջան), Ագիամանի (Մարտունու շրջան), Ախտայի և Ցեղվարդի (Աշտարակի շրջան) ջրանցքները: Տեղական մեր կազմակերպությունները պետք է ապահովեն մեր կոլտնտեսությունների, կոլտնտեսականների նախաձեռնությունը: Դրա հետ միասին անհրաժեշտ է, վոր Հողժողկոմատն իր աշխատանքները վերակառուցի այն տեսանկյունով, վորպեսզի կարողանա ժամանակին հարկ յեղած շրջաններին անհրաժեշտ ոգնություն ցույց տալ:



Շրջանային կուսակցական կազմակերպությունները ու Հողժողկոմատն ամեն կերպ պետք է բարելավեն իրենց ղեկավարությունն այդ աշխատանքների նկատմամբ:

Քիչ աշխատանք չի կատարվել նաև ժողովրդին խմելու ջուր մատակարարելու բնագավառում: Հաշվետու ժամանակաշրջանում Համ. Կ(բ)Կ Կենտկոմի և ԽՍՀՄ Ժողկոմխորհի մեծ ոգնության շնորհիվ խոշոր աշխատանք է կատարված կոլտնտեսությունների ջրամատակարարման գծով, հատկապես Վաղարշապատի, Աշտարակի, Թալինի և այլ շրջաններում: Յեթե մինչև 1934 թվականն անցկացված է յեղել ընդամենը 7.5 կիլոմետր ջրմուղ, վորը ջուր եր մատակարարում 14 գյուղերի, ապա համեմատաբար կարճ ժամանակամիջոցում — 1934 թվականից մինչև 1937 թվականը, կառուցված է 206 կիլոմետր նոր ջրմուղ, վորոնք խմելու առողջարար ջուր են մատակարարում 66 գյուղերի:

Հողժողկոմատը մեծ աշխատանք է կատարել կոլտնտեսությունների ջրամատակարարման գծով, սակայն վոչ մի էական բան չի արել ջրամատակարարումն ազգային փոքրամասնությունների գյուղերում ծավալելու համար. վոչինչ չի արված Վեդիի, Ամասիայի, Ապարանի և այլ շրջաններում, վորոնք ապահովված չեն խմելու ջրով:

Ներկայումս նոր, մեծ ջրմուղ է կառուցվում Թալինի շրջանում՝ ջուր մատակարարելու համար այդ շրջանի 17 գյուղերին: Աշխատանքներ են կատարվում նաև Ապարանում, Ամասիայում, Արթիկում, Վեդիում, Ղամարլուում, Գորիսում և այլ շրջաններում: Այս տարի ավարտվում է նաև ընկեր Ստալինի առաջարկությամբ սկսված Նուբարաշենի ջրմուղի կառու-

ցումը՝ ներգաղթածների Նուբարաշեն ավանի համար:

Ջրային տնտեսության հարցերը, ամբողջ ոռոգման ցանցի բարելավումն ու շահագործումը, ջրի բոլոր ռեսուրսների լրիվ օգտագործումը կոլտնտեսությունների կողմից — կարևորագույն խնդիր է հանդիսանում գյուղատնտեսության, հատկապես հացահատիկային կուլտուրաների բերքատվության բարձրացնելու համար:

Մի քանի խոսք գյուղական էլեկտրիֆիկացիայի մասին: Հաշվետու ժամանակաշրջանում շահագործման են հանձնվել Շաքիի և Մեղրու հիդրոէլեկտրակայանները, սկսված է Ստեփանավանի, Սիսիանի և Մեղրու շրջանների կոլտնտեսությունների կոմպլեքսային էլեկտրիֆիկացումը, սկսված է և ընթացիկ տարում կավարտվի Թալինի էլեկտրակայանի ու Ղոյթուրի էլեկտրակայանի (Միկոյանի շրջան), Մուլքիի էլեկտրակայանի (Ապարանի շրջան) շինարարությունը: Բացի դրանից, ընթացիկ տարում պետք է սկսվի շրջանային խոշոր էլեկտրակայանների՝ Ամասիայի, Ագխամանի (Մարտունու շրջան) և Թուսկուլույի էլեկտրակայանների (Բասարգեչարի շրջան) շինարարությունը:

Ընթացիկ տարում սկսվել է մի շարք կոլտնտեսային էլեկտրակայանների շինարարությունը — Թռնդանոցի, Ջաֆարաբադի (Վաղարշապատի շրջան) Միխմանոյի (Ախտայի շրջան), Գողթի (Կոտայքի շրջան) կոլտնտեսություններում: Հաղորդման գծերի միջոցով էլեկտրիֆիկացիայի յեն յենթարկված 28 կոլտնտեսություն:

Պետք է լայնորեն ծավալել հետագա աշխատանքը, մանր, շրջանային հիդրոէլեկտրակայանների և կոլտնտեսությունների էլեկտրիֆիկացման ուղղու-



թյամբ՝ էլեկտրիֆիկացիան կոլտնտեսությունների արտադրական կյանքի ու կենցաղի մեջ մասսայական կերպով արմատացնելու համար:

ԽՈՐՀՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԳԾՈՎ. — Ընկեր Ստալինի նախաձեռնությամբ Համ. Կ(բ)Կ Կենտկոմը և ԽՍՀՄ Ժողկոմխորհը 1936 թվականին փորձում կայացրին «Հայկական ԽՍՀ-ում խորհտնտեսությունների, բանվորական մատակարարման բաժինների, կոոպերացիայի և այլ կազմակերպությունների մի մասը լիկվիդացիայի յենթարկելու, խորհտնտեսությունների ու այլ տնտեսությունների հողի ավելցուկները կտրելու և այդ հաշվին կոլտնտեսությունների հողամասերն ավելացնելու մասին»:

Այդ միջոցառումը կարևոր դեր խաղաց Հայաստանի կոլտնտեսությունների հետագա ամրապնդման և նրանց հողային ֆոնդերն ընդարձակելու գործում:

Այդ վորոշմանը համապատասխան 1936 թվականին Հայաստանում լիկվիդացիայի յեն յենթարկվել 5 անասնապահական, 6 մեղվաբուծական ու մեկ շաքարի ճակնդեղացան խորհտնտեսություններ և բանվորական մատակարարման բաժինների 21 տնտեսություններ: Բացի դրանից, կրճատված է 11 խորհտնտեսությունների և բանվորական մատակարարման բաժինների տնտեսությունների հողօգտագործումը:

Խորհտնտեսությունների և բանվորական մատակարարման բաժինների տնտեսությունների մի մասի լիկվիդացիայի և նրանց հողօգտագործումը կրճատելու հետևանքով կոլտնտեսություններին առհավետ օգտագործման է հանձնված 71.000 հեկտար հող: Վաճառված և հանձնված է կոլտնտեսություններին խոշոր յեղջերավոր անասուն՝ 8000 գլուխ, ձի՝ 800 գլուխ, մանր յեղջերավոր անասուն՝ 8500 գլուխ, խոզ՝ 587 գլուխ, 6768 փեթակ, խորհտնտեսություն-

ներից և բանվորական մատակարարման բաժինների տնտեսություններից վարկով կոլտնտեսություններին հանձնված գույքի ընդհանուր գումարը հասնում է 13.815.000 ռուբլու։

Մնացած խորհտնտեսությունները հաշվետու շրջանում ամրապնդվել են տնտեսապես, կազմակերպչորեն։ Լավագույն ապացույցն այն բանի, որ մեր խորհտնտեսություններն զգալիորեն ամրապնդվել են, հանդիսանում են նրանց արտադրության աճող ծավալը, անասունների սատկելու տոկոսի նվազումը, բերքատվության բարձրացումը և այլն։

Անհրաժեշտ է մոտակա տարիների ընթացքում մեր խորհտնտեսությունները դարձնել իսկապես օրինակելի, շահութաբեր խորհրդային տնտեսություններ։ Այս խնդիրը կատարելու համար անհրաժեշտ է հիմնական ուշադրությունն ուղղել խորհտնտեսությունների աշխատողների մշտական կադրերի հետագա ամրացման վրա, բարելավել նրանց կուլտուրական պայմանները, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, ծավալել ստախանովյան շարժումը, կրճատել վարչատնտեսական ծախսերը խորհտնտեսություններում, պայքար կազմակերպել բարձր բերք ստանալու համար, հասնել ինքնարժեքի իջեցման և դրանով իսկ բարձրացնել խորհտնտեսությունների յեկամտաբերությունը։

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԱԴՐԵՐԸ

Գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման, տեխնիկայի տիրապետման, գյուղատնտեսական արտելի ստալինյան կանոնադրության կիրառման համար մղվող պայքարում աճել են հարյուրավոր ու հազարավոր ստախանովականներ, ստալինյան տաներ, կոլտնտեսային կարգի առաջավորներ, որոնք



ցույց են տալիս աշխատանքի բարձր արտադրողականության օրինակներ։

Կուսակցությունը և Միության կառավարությունը գնահատեցին կոլտնտեսությունների ու խորհտնտեսությունների առաջավոր աշխատավորներին, նրանցից մի շարք մարդկանց պարգևատրելով բարձրագույն պարգևով— Միության շքանշաններով։

Անասնապահության, հացահատիկային տնտեսության, մեքենատրակտորային կայանների առաջավորները բոլշևիկորեն պայքարում են կուսակցության առաջնորդ մեծ Ստալինին տված խոստման և իրենց ստանձնած պարտավորությունների կատարման համար։ Ահա այդ մարդիկ.

Ընկեր Սպիրիդոն Տռնոյան— շքանշանակիր, Լենինականի ՄՏ կայանի բրիգադիր։ Խոստացել է յուրաքանչյուր ՍՏԶ տրակտորի արտադրողականությունը հասցնել մինչև 1000 հեկտարի։ Փաստորեն 1936 թվականին նրա բրիգադը յուրաքանչյուր տրակտորով մշակել է 1016 հեկտար։ Ընկեր Տռնոյանը 1936 թվականին վաստակել է 4530 ռուբլի և 700 փութ հացահատիկ։

Միսաք Գևորգյան — Թալինի ՄՏ կայանի բրիգադիր։ Խոստացել է մեկ տրակտորով մշակել 900 հեկտար։ Փաստորեն նրա բրիգադի յուրաքանչյուր տրակտորը մշակել է 1242 հեկտար։

Սարգիս Գրիգորյան— Բասարգեչարի ՄՏ կայանի կալսիչի վրա աշխատող։ Պարտավորություն էր ստանձնել 1936 թվականին մեկ կալսիչով կալսել 750 տոնն։ Փաստորեն կալսել է 1215 տոնն։

Ընկեր Ալեքսան Պողոսյան— շքանշանակիր տրակտորիստ, աշխատում է ՉՏԶ տրակտորի վրա։ Հանձն էր առել մեկ ՉՏԶ տրակտորով մշակել 2000 հեկտար, փաստորեն մշակել է 2133 հեկտար։

**Ընկեր Ամիրխան Արտաշյան**— *Ապարանի շրջանի Թուրք Գյոզալդարա գյուղի կոլտնտեսության օղակավար։ 1936 թվականին 35 հեկտար հողամասի յուրաքանչյուր հեկտարից ստացել է 56 ցենտներ գարի, իսկ յերկու հեկտարից՝ 80-ական ցենտներ։*

*Լենինականի շրջանի Ծլիխան գյուղի օղակավար* Սարգիս Մանուկյանը *1936 թվականին մեկ հեկտարից ստացել է 60 ցենտներ բերք։*

Խաչատուր Մարտիրոսյան— *Ղուլալի գյուղի կոլտնտեսությունից— յուրաքանչյուր հեկտարից ստացել է 68 ցենտներ գարի։*

*Վաղարշապատի շրջանի «Արշալույս» գյուղի կոլտնտեսության օղակավար* Թանկագին Մովսիսյանը *յուրաքանչյուր հեկտարից ստացել է 30 ցենտներ բամբակ։*

*Հոկտեմբերյան շրջանի Ջանֆիդա գյուղի «ԿԻՄ»-ի անվան կոլտնտեսության կոլտնտեսուհի* Զարուհի Մուրադյանն *օրական հավաքել է միջին հաշվով 113 կիլոգրամ բամբակ, իսկ առանձին օրերին՝ մինչև 430 կիլոգրամ։*

*Եմքիլար գյուղի կոլտնտեսուհի* Շուշանիկ Ասատրյանը *հավաքել է օրական 103 կիլոգրամ բամբակ։*

*Ղամարլուի շրջանի «Շինարար» կոլտնտեսության նախագահ* Հայկ Պետրոսյանը *մի հեկտարից ստացել է 101 ցենտներ խաղող։*

*Նույն կոլտնտեսության օղակավար* Աղասի Առաքելյանը *մեկ հեկտարից ստացել է 210 ցենտներ խաղող։ Աշտարակի շրջանի Օշական գյուղի Դիմիտրովի անվան կոլտնտեսության բրիգադիր* Անդրանիկ Մարտիրոսյանը *հեկտարից ստացել է 160 ցենտներ խաղող։ Մեղրու «Նոր կյանք» կոլտնտեսության մեջ* Վահան Ոհանյանը *հեկտարից ստացել է 200 ցենտներ դեղձ։*

Շաքար Հակոբյանը— *Ալավերդու շրջանի Արճեսի կոլտնտեսությունից— հեկտարից ստացել է 200 ցենտներ պտուղ և այլն։*



*Քիչ չեն շքանշանակիր ստախանովականների թիվը նաև անասնապահության ասպարեզում։ Այդ ստախանովականները պատվով կատարում են կուսակցության առաջնորդ ընկեր Ստալինին տված խոստումը և իրենց ստանձնած պարտավորությունները։*

*Շքանշանակիր* Արմենակ Սարգիսջանյան— *Գորիսի շրջանի Բռուն գյուղի կոլտնտեսության նախագահ— 100 մաքիից 1936 թվականին ստացել և աճեցրել է 216 գառ։*

Աննա Դանիլովա— *Ստեփանավանի շրջանի Սարատովկա գյուղի կոլտնտեսության կթվոր— իր լավ աշխատանքի շնորհիվ մեկ կովի միջին կիթը հասցրել է մինչև 3320 լիտր։*

Աշիկ Գյոզալյան— *Ստեփանավանի շրջանի Ստալինի անվան կոլտնտեսության կաթնապրանքային ֆերմայից—1936 թվականին յուրաքանչյուր կովի միջին կիթը հասցրել է 3.285 լիտրի, հորթերի քաշի օրական միջին աճը հասցրել է մինչև 550 գրամ։*

Սիմոն Մինասյան— *Արթիկի շրջանի Նորաշենի կոլտնտեսության ստախանովական հովիվ—վոչխարները լավ խնամելու շնորհիվ 1936 թվականին 50 մաքիից ստացել է 62 գառ, իրեն ամրացրած յուրաքանչյուր վոչխարից ստացել է 110 լիտր կաթ, գառների միջին քաշը հասցրել է մինչև 45 կիլոգրամ։*

*Կարելի յե բերել դարձյալ շատ օրինակներ։*

*Աշտարակի շրջանի Եղվարդ գյուղի կոլտնտեսությունը, վորի նախագահն է ընկեր* Կարապետ Աղեկյանը, *յուրաքանչյուր աշխորի համար տվել է 14,4 կիլոգրամ հացահատիկ։*

*Իլխիարի գյուղի կոլտնտեսությունը, վորտեղ վորպես նախագահ աշխատում է ընկ.* Խսրո Սադոյանը, *մեկ աշխորի համար տվել է 16,5 կիլոգրամ հացահատիկ։*

Կոլխոզարտայի կոլտնտեսությունը յուրաքանչյուր աշխօրի համար տվել է 17 կիլոգրամ հացահատիկ և այլն:

Ուսյալ կադրերի մասին, պետք է հատկապես ընդգծել և մեր կուսակցական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրել այն բանի վրա, որ հողային մարմիններում բույն դրած հակահեղափոխական տարրերը մինչև վերջերս էլ դեռ չեն մերկացված: Թե Հողժողկոմատի և թե հողային մարմիններում, ՄՏ կայաններում վերջին ժամանակներս հայտնաբերվեցին մի շարք հակահեղափոխականներ, որոնք վնասում էին և խանգարում մեր տեղական մարմիններին՝ անցկացնելու կուսակցության գիծը:

Պետք է վճռական միջոցներ ձեռք առնել հողային բոլոր մարմինները մաքրելու համար վնասարար տարրերից, նրանց փոխարեն առաջ քաշելով ստուգված և գործին հմուտ նոր մարդիկ, որոնք կապահովեն կուսակցության և կառավարության որոշումների կատարումը:

Այս տարիների ընթացքում ստախանովյան շարժման լայն ծավալմամբ, տեխնիկայի տիրապետման համար պայքարելու հետևանքով աճել են կոլտնտեսային կարգի հարյուրավոր ու հազարավոր առաջավոր մարդիկ, աճել են ունևոր և կուլտուրական կոլտնտեսական կյանքի համար պայքարող առաջավոր մարտիկների նորանոր կադրեր:

1934–36 թվականների ընթացքում մեր գյուղատնտեսական ԲՈՒՀ-երը տվել են 630 հոգի բարձր որակի մասնագետներ, գյուղատնտեսական տեխնիկումները ավարտել են 739 միջին որակի մասնագետներ, մասսայական որակի կադրեր պատրաստված են 20126 հոգի: 1937 թվականին շրջանային կոլտնտեսային դպրոցները պետք է պատրաստեն մոտ 25 հազար հոգի:



Հողժողկոմատի սիստեմում աշխատող մասնագետների քանակը վերջին տարիների ընթացքում աճել է մոտ 1046 հոգով, այդ թվում բարձր որակի մասնագետները՝ 496 հոգի: Բարձրացել է արտադրության մեջ աշխատող մասնագետների տեսակարար կշիռը: Սակայն պետք է նշել, որ կուսակցական ու խորհրդային օրգանները միանգամայն անբավարար չափով են զբաղվել մասսայական որակի կադրերի պատրաստման հարցերով: Պլանի համաձայն 1937 թվին նախատեսված է Հողժողկոմատի սիստեմի գծով կազմակերպվելիք դասընթացներում ընդգրկել 25068 հոգի: Մինչև ապրիլի 1-ը դասընթացներն ընդունվել են 9839 հոգի: Ուսման որակը նույնպես այն չէ, ինչ որ պետք է լինի:

Գյուղատնտեսության բնագավառում վատ են աշխատում մեր գիտահետազոտական կազմակերպությունները: Նրանք կտրված են կոլտնտեսային արտադրությունից, ստախանովյան շարժումից: Գիտահետազոտական հաստատությունները ևս ընդհուպ չեն մոտեցել ստախանովականների փորձի ընդհանրացմանը, առաջավոր ագրոտեխնիկան կոլտնտեսություններում մասսայաբար արմատացնելու խնդիրներին:

Ընկերնե՛ր, վերջերս վերջնականապես մերկացվեց և ձերբակալվեց որպես յերկերեսանի, թաղնված տրոցկիստ Ցենդիբարյանը, որը վերջին յերկու տարվա ընթացքում Կենտկոմի Գյուղատնտեսական բաժնի վարիչն եր: Նրա գործի քննությունը նոր է միայն սկսվել, բայց արդեն այժմ կարելի յե առանց տարակուսելու ասել, որ հողային օրգաններում հակահեղափոխական-տրոցկիստական-նացիոնալիստական տարրերի տեղավորման ստոր աշխատանքի մեջ գործելիս է յեղել այդ յերկերեսանու ձեռքը:

Ընկեր Մամիկոնյանը, որը յերկար ժամանակ

հողագործության ժողկոմ էր, բացահայտորեն աչքա-
թող է արել այդ գործը, կուսակցության անդամի
համար անթույլատրելի բյուրոկրատական վերաբեր-
մունք է հանդես բերել Հողժողկոմատի ապարատը
թշնամական տարրերով կեղտոտված լինելու վերա-
բերյալ ազդանշանների նկատմամբ:

ՄՏ կայանների տնտեսական և ֆինանսական դր-
ությունը— ՄՏ կայանների մեքենա-տրակտորային
պարկը,— ինչպես արդեն նշված է Կենտկոմի հայտա-
նի վորոշմամբ,— գտնվում է միանգամայն անբավա-
րար վիճակում, և անհրաժեշտ է մատնանշել, վոր
Հողժողկոմատի ղեկավարությունը՝ հանձինս ընկեր
Մամիկոնյանի և համապատասխան վարչությունների
պետերի՝ չգտնվեց իր գործի բարձրության վրա:

Ընկեր Գումեդինից—վորն արդեն բավական ժա-
մանակ աշխատում է Հողագործության ժողովրդա-
կան կոմիսարիատում— պահանջվում է ավելի շատ
և լուրջ միջոցներ ձեռք առնել գյուղատնտեսության
մեջ վնասարարության հետքերը վերացնելու համար:

Այժմ, յերբ մեզ արդեն հաջողվեց մասամբ յե-
րևան բերել Հողժողկոմատում և նրա սիստեմում յե-
ղած վնասարարության տարրերը, կուսակցական կազ-
մակերպությունների և հողային մարմինների խնդիրն
է ընդհուպ, ինչպես այդ վայել է բոլշևիկներին,
ձեռնամուխ լինել թույլ տրված սխալների ուղղմանը,
հողային մարմինները մաքրելու համար դեռ այնտեղ
նստած նացիոնալիստական, վնասարարական տարրե-
րից:

ՀՈՂԱՅԻՆ ՄԱՐՄԻՆՆԵՐԸ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՍՏՈՒԳ-
ՎԱԾ ԿԱԴՐԵՐՈՎ ամրացնելու հարցը մեր կուսակցու-
թյան առաջնորդ ընկեր Ստալինն ամենայն սրու-
թյամբ դրել է բոլոր կուսակցական կազմակերպու-
թյունների առաջ: Համկ(բ)Կ Կենտկոմի վերջին Պլե-



նումում «Կուսակցական աշխատանքի թերությունների
և տրոցկիստական ու այլ յերկերեսանիներին լիկվի-
դացիայի յենթարկելու միջոցառումների մասին» ար-
ված իր պատմական զեկուցման մեջ ընկեր Ստալինն
ասաց՝

«Հետևաբար, անհրաժեշտ է յուրացնել տըն-
տեսական օրգանների բոլշևիկյան ղեկավարման
մեթոդը, վորը կայանում է նրանում, վոր սիս-
տեմատիկաբար օգնենք այդ օրգաններին, սիս-
տեմատիկաբար ամրացնենք նրանց և տնտեսու-
թյունը ղեկավարենք վոչ թե այդ օրգաններից
անկախ, այլ նրանց միջոցով: Հարկավոր է տըն-
տեսական օրգաններին ու նախ և առաջ հողային
օրգաններին տալ լավագույն մարդիկ, հարկա-
վոր է այդ օրգանները կոմպլեկտավորել նոր,
լավագույն աշխատողներով, վորոնք ընդունակ
լինեն կատարելու իրենց վրա դրված խնդիրները:
Միայն այն բանից հետո, յերբ կկատարվի այդ
աշխատանքը, կարելի յե հույս ունենալ, վոր
կուսակցական կազմակերպությունները լիովին
կազատագրվեն տնտեսական մանրուքներից»:

Կուսակցության համագումարից հետո մենք ան-
հրաժեշտորեն պետք է ընդհուպ մոտենանք հողային
մարմինները, շրջանային հողբաժինները և ՄՏԿ-ները,
ինչպես նաև Հողժողկոմատի ապարատն ստուգված
կուսակցական վորակյալ կադրերով ամրացնելու հար-
ցերին, այնպիսի կադրերով, վորոնք կարողանան իս-
կապես հողային մարմինները դարձնել Հայաստանի
գյուղատնտեսության ղեկավարման շտաբ:

Ընկերնե՛ր, 1937 թվականին գյուղատնտեսության
բնագավառում մեր առջև կանգնած են մեծ խնդիրներ:

Մենք պետք է՝

1. Բարձրացնենք հացահատիկային կուլտուրա-

ների բերքատվությունը՝ հասցնելով յուրաքանչյուր հեկտարին մինչև 15 ցենտներ, յուրաքանչյուր հեկտարից տանք առնվազն 15 ցենտներ բամբակ, տնկենք 1.722 հեկտար խաղողի այգի, 1.835 հեկտար պտղատու այգի, 140 հեկտար չոր մերձարևադարձային կուլտուրաներ, պտղատու և խաղողի այգիների բերքատվությունը հասցնենք հեկտարից մինչև 100 ցենտների:

2. Կատարենք անասնապահության զարգացման պետական պլանը, առաջ մղենք մեխիզացիայի գործը, ստեղծենք կուլտուրական կերի բազա, վճռականորեն լիկվիդացիայի ենթարկենք վնասարարության հետևանքներն անասնապահության և անասնաբուծության բնագավառում:

3. Ապահովենք 12 հազար հեկտար ջրովի հողերի յուրացումը և 6000 հեկտար արոտատեղերի ոռոգումը:

4. Մեր ՄՏ կայանները դարձնենք կոլտնտեսային արտադրության ղեկավարման օրինակելի ձեռնարկություններ:

5. Կոնկրետ կերպով զբաղվենք կոլտնտեսություններով ու ղեկավարենք կոլտնտեսությունները, վճռականորեն լիկվիդացիայի ենթարկենք գյուղատնտեսական արտելի կանոնադրության խախտումները:

6. Բարձրացնենք կուսակցական կազմակերպությունների, հողային օրգանների ու կոլտնտեսականների զգաստությունը ժողովրդի թշնամիների՝ տրոցկիստների, նացիոնալիստների, վնասարարների ու նրանց աջակիցների դեմ, որոնք ձեռք են բարձրացնում սոցիալիզմի գործի վրա:

Անշեղորեն կենսագործելով մեր կուսակցության առաջնորդ ընկեր Ստալինի ցու-



ցումները, ամեն կերպ ամրապնդելով հողային օրգանները բոլշևիկյան ստուգված կադրերով, մենք էլ ավելի մեծ հաջողությունների կհասնենք գյուղատնտեսության բնագավառում և դրանով իսկ կապահովենք կոլտնտեսությունների հետագա կազմակերպական-տնտեսական ու քաղաքական ամրապնդումը (բուռն ծափահարություններ):

## ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՆՅՈՒԹԱԿԱՆ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ԱՃՈՒՄԸ

Արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացմանը զուգընթաց մեզանում լայնորեն ծավալվել է խորհրդային առևտուրը: Կուսակցության 17-րդ համագումարում ընկեր Ստալինն ասաց.

«...խորհրդային առևտրի ծավալումն այն ակտուալ խնդիրն է հանդիսանում, առանց որի լուծման հնարավոր չէ այսուհետև առաջ շարժվել»:

Այդ խնդրի լուծման համար Հայաստանի կուսակցական կազմակերպությունները մեծ աշխատանք են կատարել ապրանքների նորմավորված բաշխման սիստեմը վերացնելու, առևտրա-կոոպերատիվ ցանցը ձեռնհաս կադրերով ամրացնելու և ծավալուն խորհրդային առևտրի համար նյութական-տեխնիկական բազա ստեղծելու ուղղությամբ:

1934 թվականին ապրանքաշրջանառությունն արտահայտվում է 353,6 միլիոն ռուբլու գումարով, 1936 թվականին՝ 563,4 միլիոն ռուբլի կամ աճում 59,6 տոկոսով: Ապրանքաշրջանառությունը գյուղում ավելացել է ավելի քան յերկու անգամ, իսկ 1937 թվականին կաճի ավելի քան յերեք անգամ:

Առեվտրի նյութական-տեխնիկական բազայի կառուցման ու վերակառուցման գործում ներդրված է ավելի քան 11 միլիոն ռուբլի: Կառուցված են առանձին նոր խոշոր խանութներ ու պահեստներ:

Կազմակերպված է առեվտրի մասնագիտացած ցանց: Յերեվանում 1937 թվականի հունվարին շահագործման հանձնվեց Սոյուզունիվերմագի մեծ խանութը: Գյուղերում կառուցված է կահավորված են 33 շրջանային ունիվերսալ խանութ, 55 գյուղական խանութ, 14 շրջանային մթերային խանութ և 7 կուլտապրանքների խանութ:

Ներկայումս մենք ունենք զգալի թվով կուլտուրական խանութներ: Առեվտրի ասպարեզում յեղած բոլոր վերոհիշյալ նվաճումների հետ միասին, դեռեվս կան նաև մի շարք թերություններ: Փոխանակ ամենաակտիվ կերպով ղեկավարելու կուլտուրական խորհրդային առեվտրի կազմակերպումը, Ներքին առեվտրի ժողկոմ ընկեր Դաստակյանը լայնորեն կիրառում է հրամանների ու թղթի վոլոկիտայի սիստեմը: Առեվտրի պլանավորումը մինչեվ այժմ կատարվում եր վերեվից, առանց սպառողների պահանջը հաշվի առնելու:

Առեվտրական կազմակերպությունների ապարատի վորոշ օղակները խճողված են հակահեղափոխական տրոցկիստներով, դաշնակներով, քրեական տարրերով: Այդ դրությունն ապացուցում են Յերեվանում բանջարեղենի պահեստների շինարարության ասպարեզում յեղած վնասարարության փաստերը, բանջարեղենի ու մրգի առեվտրի ձախողումը 1936 թվականին, խոշոր յուրացումների ու հափշտակումների առկայությունը:

Առեվտրի ասպարեզում դեռեվս վերացված չէ հակասանիտարական դրությունը, առորյա պահանջի



ապրանքների առեվտրի ասպարեզում ընդհատումները հատկապես գյուղում, գնորդների նկատմամբ կոպիտ ու վատ կուլտուրական վերաբերմունքի դեպքերը:

Սպառողական կոոպերացիայի մեջ խախտվում են կոոպերատիվ դեմոկրատիայի սկզբունքները (ընտրականություն, հաշվետվություններ փայատերերի առաջ և այլն):

Կուսակցական կազմակերպությունների և առեվտրի աշխատողների խնդիրն է լիկվիդացիայի յենթարկել մատնանշված բոլոր թերություններն ու խայտառակությունները, առեվտրական սիստեմն ե՛լ ավելի ամրացնել ստուգված մարդկանցով, քաղաքականապես դաստիարակել նրանց և յուրացնել կուսակցության առաջնորդ ընկեր Ստալինի այն կարեվորագույն ցուցումը, թե «...Խորհրդային առեվտուրը մեր հարազատ բոլշեվիկյան գործն է, իսկ առեվտրի աշխատողները, այդ թվում և վաճառասեղանի աշխատողները, յեթե միայն նրանք աշխատում են ազնվորեն,— մեր հեղափոխական բոլշեվիկյան գործի տարածողներն են հանդիսանում»:

## ՊՐՈՖՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Անընդհատ, անշեղորեն բարելավվում է մեր աշխատավորության նյութական-կենցաղային դրությունը: Հունվարյան մարդահամարի տվյալներով Հայկական ԽՍՀ-ում, առ 1-ն հունվարի 1937 թվականի, 1926 թվականի համեմատությամբ բնակչության աճումը տասը տարվա ընթացքում կազմում է 38,6 տոկոս:

Բանվորների ու ծառայողների թիվը, առ 1-ն հունվարի 1937 թվականին հասել է 103·197 հոգու, 1934 թվականի 96·714 հոգու դիմաց:

Բանվորների ու ծառայողների աշխատավարձի ֆոնդը 1934 թվականին կազմում է 213,7 միլիոն ռուբլի, իսկ 1937 թվականին հասել է 323,5 միլիոն ռուբլու (աճումը՝ 51,4 տոկոսով):

Մեկ բանվորի տարեկան միջին աշխատավարձը 1934 թվականին կազմում էր 1690 ռուբլի, իսկ 1936 թվականին՝ 2508 ռուբլի (աճում՝ 48 տոկոսով):

Հարյուրավոր առաջավոր ստախանովական բանվորներ գերակատարում են արտադրական առաջադրանքը և ստանում են տարեկան դրույքը մի քանի անգամ գերազանցող աշխատավարձ:

Այս երեք տարվա ընթացքում սոցիալական ապահովագրության գործի մեջ ներդրված է մոտ 85 միլիոն ռուբլի: Աճումը 1936 թվականին 1934 թվի համեմատությամբ կազմում է 43 տոկոս: Տրված է մոտ 12 միլիոն ռուբլի կենսաթոշակ:

Զգալիորեն աճել է բնակարանային շինարարությունը: Վերջին երեք տարվա ընթացքում քաղաքներում ու բանվորական կենտրոններում կառուցված է 219 հազար ք. մ. բնակելի տարածություն, որից Երևանում 141 հազար ք.մ.:

Բարելավվել է աշխատավորների սպասարկումն առողջապահության, սանատորիական-կուրորտային բուժման գծով, ինչպես և լայն սպառման ապրանքների մատակարարման գծով: Այդ տեսակետից, մենք կարող էինք ունենալ է՛լ ավելի մեծ հաջողություններ, եթե պրոֆմիություններն աշխատեին ավելի լավ:

Պրոֆկազմակերպությունների աշխատանքում եղած թերությունները, որ բացահայտեց ՀԱՄԿԽ-ի 6-րդ պլենումը, լիովին ու ամբողջությամբ վերաբերում են նաև Հայաստանի պրոֆմիություններին: Կենտկոմը բացահայտեց, ու հատկապես քննության



առավ ՀԱՄԽ-ի առանձին միությունների կողմից պրոֆմիութենական միջոցները շռայլելու հարցը: Մի շարք կոմունիստներ, որոնք երկար տարիներ աշխատում են պրոֆմիություններում, վատ են յեղել իրենց գործում: Կենտկոմը կուսակցական տույժ տվեց նրանց և հանցավորներին ենթարկեց դատական պատասխանատվության:

Պրոֆմիությունների ղեկավարման բնագավառում կուսակցական կազմակերպությունների խնդիրն է — պրոֆմիություններն ամրացնել ստուգված բոլշևիկյան կադրերով: Արհեստակցական միությունների խորհրդի 6-րդ պլենումի որոշումներին համապատասխան՝ ապահովել պրոֆօրգանների հաշվետվությունների անցկացումը, պրոֆօրգանների ընտրության կապակցությամբ լայն կերպով ծավալել քննադատությունն ու ինքնաքննադատությունը:

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ

Ստալինյան Սահմանադրության նախագծի հրապարակման ու քննարկման կապակցությամբ, խորհուրդները մեծ աշխատանք ծավալեցին: ԽՍՀՄ Սահմանադրության և նրա զավակը հանդիսացող Հայկական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետության Սահմանադրության նախագծի քննարկումն ու ուսումնասիրությունը մեր ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում ուղեկցվեց արտադրական մեծ վերելքով:

Բանվորների, բանվորուհիների, կոլտնտեսականների, ուսանողների, գիտության ու արվեստի աշխատողների բազմաթիվ ելույթները Սահմանադրության քննարկման ժամանակ, տոգորված նյին սոցիալիստա-

կան հայրենիքի, Լենին-Ստալինի կուսակցության մեծ գործի, նոր Սահմանադրության նախաձեռնողի ու ստեղծողի, ժողովուրդների առաջնորդ մեծ Ստալինի նկատմամբ անսահման սիրո ու նվիրվածության զգացմունքով: (Բուռն ծափահարություններ):

*Խորհուրդների և խորհրդային հիմնարկների աշխատանքի մեջ կան խոշորագույն թերություններ: Ամենախոշոր թերությունը խորհուրդների աշխատանքի մեջ, խորհրդային դեմոկրատիայի կոպիտ խախտման յերևույթներն են:*

*Կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ ճշգրիտ կերպով պահպանել խորհրդային դեմոկրատիայի բոլոր պահանջները:*

Մեր խնդիրն է՝ ինչպես հարկն է ամրացնել խորհուրդները բոլշևիկյան կայուն կադրերով, դաստիարակելով և համարձակորեն առաջ քաշելով նոր մարդկանց՝ տեղական ակտիվին:

## ԴԱՏԱՐԱՆ ՅԵՎ ԴԱՏԱԽԱԶՈՒԹՅՈՒՆ

*Հաշվետու ժամանակում դատարանի ու դատախազության մարմինները քիչ աշխատանք չեն կատարել սոցիալիստական սեփականության հափշտակողների և այլ հանցավոր տարրերի դեմ մղվող պայքարում: Սակայն դատական-դատախազական մարմինների աշխատանքն ունի շատ լուրջ թերություններ:*

*Դրա գլխավոր պատճառը ապարատի խճողվածությունն է խորթ մարդկանցով, դատարանի ու դատախազության աշխատողների թույլ վորակը: Դրա հետևանքով առաջ են գալիս քաշքշուկ, բյուրոկրատիզմ, գործերի յերկար ժամանակ առանց քննության մնալը, զգալի թվով սխալ վճիռներ և այլն:*



*Անհրաժեշտ է նշել, վոր խորհրդային պետության պատժիչ ճիշտ քաղաքականությունը հասցրեց հանցագործությունների զգալի իջեցմանը:* Խնդիրն այն է, վոր դատարանը և դատախազությունը ապահովվեն մեր մարդկանցով, վորոնք իրենց քաղաքական պատրաստությամբ, գործնական վորակավորմամբ և բարոյական հատկություններով լիովին համապատասխանեն ստալինյան Սահմանադրության բարձր պահանջներին:

## ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹՅՈՒՆ

*Առողջապահության բնագավառում մենք հասել ենք զգալի հաջողությունների:*

*1934-37 թվերին կառուցվել և շահագործման են հանձնվել բուժական կոմբինատը և տուբերկուլյոզային ինստիտուտը՝ Յերևանում, հիվանդանոցներ՝ Լենինականում, Իջևանում և այլն: Մահճակալների թիվը հասցված է 2293-ի, 1935 թ. սկզբում յեղած 1603-ի փոխարեն:*

*Բարելավվել է հիվանդների սնունդը, 1937 թվականի բյուջեյով յուրաքանչյուր հիվանդի համար նախատեսված է քաղաքում 6 ռուբլի, 1934 թվականի 1 ռ. 80կ.-ի փոխարեն, իսկ գյուղում համապատասխանորեն՝ 4ռ. 50կ., 1ռ. 20 կ.-ի փոխարեն:*

*Հաշվետու ժամանակաշրջանի խոշորագույն նվաճումն է հանդիսանում այնպիսի մի լուրջ հիվանդության վերացումը, ինչպիսին է բնական ծաղիկը: Ունեցել ենք զգալի հաջողություններ նաև մալարիայի դեմ մղվող պայքարում: Չորացված և յուրացված է 811 հեկտար ճահճապատ տարածություն, 8600 հեկտար տարածության վրա կատարված է աերոսրսկում: Մալարիայի դեմ մղվող պայքարի վրա այս յերեք տարվա ընթացքում ծախսված է 6 միլիոն ռուբլի:*

1936 թվականին շահագործման է հանձնված գյու–ղական ծննդատնային 48 մահճակալ. մինչև 1937 թվականի վերջը մահճակալների թիվը կհասնի 482-ի: Ավարտվում է 13 մանկամսուրների կառուցումը՝ 1118 մահճակալով:

Կապիտալ շինարարության մեջ՝ 1934—1937 թ. թ. ներդրված է 19.6 միլիոն ռուբլի:

Յերևանի բժշկական ինստիտուտն իր գոյության ընթացքում տվել է 593 բժիշկ, վորից 214-ը վերջին յերկու տարվա ընթացքում:

Անհրաժեշտ է ընդգծել առողջապահության մարմինների աշխատանքում յեղած յերկու խոշորագույն թերություն. առաջինը՝ կառուցվող հիմնարկները, մանկամսուրները և այլն շահագործման հանձնելու համար կառավարության կողմից սահմանված ժամկետներն անթույլատրելիորեն ձգձգելը և՝ յերկրորդ՝ անբավարար բժշկական օգնությունը շրջաններում.

Կարևորագույն խնդիր է հանդիսանում հատկացված նշանակալից միջոցների ժամանակին ու լրիվ իրացումը և բնակչության՝ վորակյալ բուժական օգնության պահանջի լրիվ բավարարումը: Անհրաժեշտ է, վորպեսզի շրջանային ակտիվը հարկ յեղած աջակցությունը ցույց տա բուժական գործը տեղերում հաջող կազմակերպելուն:

Կուրորտային գործում մենք մինչև այժմ էլ դեռ ունենք խոշորագույն թերություններ: Հայաստանում միակ կուրորտներն են հանդիսանում՝ Դիլիջանը և Արզնին: Վերջինս ճանաչված է վորպես Միութենական նշանակություն ունեցող կուրորտ: Մինչդեռ, ինչպես Դիլիջանում, այնպես էլ Արզնիում, չկա վոչ մի կարգ ու կանոն: Իսկ սանատորիաների շինարարությունն հանցավոր կերպով ձգձգվում է: ՀԱՄԿԽ-ի նախագահությունը և անձամբ ընկեր Շվերնիկը պետք



է միջոցներ ձեռք առնեն շինարարությունն ամենաարագ կերպով ավարտելու ուղղությամբ: Իսկ առժողկոմ ընկ. Ղեվոնդյանը պետք է ավելի հաճախ լինի տեղերում և անձամբ ձեռնամուխ լինի կուրորտներում տարրական կարգ ու կանոն ապահովելու գործին:

## ՆԵՐԳԱՂԹԸ ՅԵՎ ՆԵՐԳԱՂԹՈՂՆԵՐԻ ՀԱՄԱՐ ԿԱՏԱՐՎՈՂ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ

Շնորհիվ ՀամԿ(բ)Կ Կենտկոմի և անձամբ ընկեր Ստալինի կողմից աշխատավոր հայ ներգաղթողների նկատմամբ ցուցաբերվող հոգատար և ուշադիր վերաբերմունքի, ստեղծված են բոլոր պայմանները նրանց բարեկեցության ու աշխատանքային գործունեության համար:

Ներգաղթածների ավանները բարեկարգվում են: Նրանց համար կազմակերպված են մի շարք տնայնագործական–արհեստագործական արտադրություններ՝ մետաքսագործական, ներկարարական, կոշկեղենի և այլն:

1937 թվին ներգաղթածների ավանների կոլտնտեսություններին արտոնյալ գներով բաց են թողնված 1200 գլուխ մանր յեղջերավոր անասուններ: Ընթացիկ տարում լայնորեն ծավալվել է կոմունալ բնակարանային ու կուլտուրական շինարարությունը (դպրոցներ, տներ և այլն): Այդ նպատակի համար Միության կառավարությունը հատկացրել է 7 միլիոն ռուբլի:

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՐԹՈՒԹՅՈՒՆ

Ժողովրդական լուսավորության բյուջեն ըստ բոլոր դերատեսչությունների աճել է 1935 թ. 64.700.000 ռուբլուց 1937 թ. հասնելով 156.041.000 ռուբլու:

Լուսավորության ժողովրդական կոմիսարիատի գծով կատարված հատկացումները 1934 թ. 34.123.2

հազար ռուբլուց 1937 թ. հասել է մինչև 97.939.000 ռուբլու: Կապիտալ ներդրումները հենց միայն 1937 թ. համար նախատեսված է 20.529.000 ռուբլի, 1935 թ. 3.127.000 ռուբլու փոխարեն:

Հայկական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետության մեջ, ընթացիկ տարում, քաղաքներում կառուցվում են 17 դպրոց (դրանցից 8-ը՝ Յերևանում): Գյուղերում կառուցվելու յեն 72 նոր դպրոց և ավարտվելու յեն անցյալ տարվանից կիսատ մնացած դպրոցները:

Նախապատրաստվում է Պետական համալսարանի նոր շենքի կառուցումը, շենքեր են կառուցվելու՝ ուսուցիչների վորակի բարձրացման ինստիտուտի համար, նախադպրոցական տեխնիկում՝ Յերևանում, մանկական տուն՝ Լենինականում, մանկատուն՝ Բայազետում, 15 մանկապարտեզ, ավարտվելու յե պիոներական պալատը, հանրային գրադարանի շենքը, կառուցվելու յե ակումբ՝ Ջամուչլայում, գրադարան՝ Վեդիում և այլն:

Աճել է գրադարանների գրքի ֆոնդը, վորը կազմում է 1.862.760 գիրք (1935 թվի 1.571.132 գրքի փոխարեն):

Աճել են ակումբների և շրջանային՝ սոցիալիստական կուլտուրայի տների համար կատարվող հատկացումները:

Զգալիորեն բարելավվել է ուսուցչության նյութական դրությունը:

Աշխատավարձի ֆոնդը 1934 թ. 13.755.000 ռուբլուց աճել է 1937 թ. հասնելով մինչև 46.619.000 ռուբլու:

Տարրական դպրոցի ուսուցչի աշխատավարձի դը-



րույքն ամսական 115 ռուբլուց հասել է 227 ռուբլու:

1159 մասսայական դպրոցներում (տարրական, թերի միջնակարգ և միջնակարգ) ներկայումս սովորում են 239.706 աշակերտ, 1934 թ. 206.572 աշակերտի դիմաց:

Մանկավարժական դպրոցներում սովորում են 3.270 ուսանող, 1934 թվականի 2.277 ուսանողի փոխարեն:

Բարձրագույն ուսումնական հաստատություններում (Պետական համալսարան, Մանկավարժական ինստիտուտ, Ուսուցչական ինստիտուտ) սովորում են 2.103 ուսանող, 1935 թ. 1.425 ուսանողի փոխարեն:

Հաշվետու ժամանակամիջոցում մանկավարժական դպրոցները (մանկավարժական տեխնիկումները) տարրական դպրոցներին տվել են 1.400 ուսուցիչ, Պետական համալսարանը և Մանկավարժական ինստիտուտը 412 ուսուցիչ են տվել թերի միջնակարգ և միջնակարգ դպրոցների համար: Ընթացիկ տարում, առաջին անգամ տրվելու յեն թերի միջնակարգ դպրոցի ռուսաց լեզվի ու գրականության 59 շրջանավարտ ուսուցիչ: Սեպտեմբերին կբացվի ուսուցչական ինստիտուտի ադրբեջանյան բաժանմունք: Սակայն ուսման վորակը մեր ուսումնական հաստատություններում դեռևս չի համապատասխանում այն պահանջներին, վոր դրել է մեր առջև մեր կուսակցության Կենտկոմը:

Ուսանողների դրագխությունը տարեց-տարի բարձրանալով, այնուամենայնիվ, չի հասել ցանկալի աստիճանին: Մի շարք տեղերում դպրոցական աշխատողների և ժողովրդական լուսավորության օրգանների, և իր՝ Լուսժողկոմատի լիբերալ վերաբերմունքի հետևանքով դեպքեր են յեղել, յերբ աշակերտները մասնակցել են կրոնական տոնակատարություններին

(Աշտարակ, Վաղարշապատ) և այլն: Մարտնչող անաստվածներ պատրաստելու խնդիրը մեր դպրոցը դեռևս չի կատարել:

Լուսժողկոմատը դեռ չի կանոնավորել դպրոցներում ԽՍՀՄ Սահմանադրության դասավանդման գործը, այդ գործը մի շարք դեպքերում հանձնարարված է յեղել չասուցված մարդկանց, կազմակերպված է յեղել ձևականորեն և մեր ուսանող յերիտասարդության առաջ բաց չի արել մեր այն նվաճումների ամբողջ մեծությունը, վորոնք գրի յեն առնված Ստալինյան Սահմանադրության մեջ:

Այդ հարցում (կադրերի ընտրությունը, Սահմանադրության դասավանդման դրվածքը) ուշադիր չեն յեղել նաև տեղական կուսակցական կազմակերպությունները: Մեր ուսումնական հաստատություններում (դպրոցներից սկսած մինչև ԲՈՒՀ-երը) դեռևս վատ է կազմակերպված ռուսաց լեզվի դասավանդումը: Պատրաստված կադրերի պակասության զուգընթաց գոյություն ունի նաև ռուսաց լեզվի թերագնահատում՝ դպրոցական աշխատողների և ժողովրդական կրթության օրգանների կողմից:

Նոր ուսումնական տարվանից անհրաժեշտ է ավելացնել դպրոցների ուսումնական պլանի մեջ ռուսաց լեզվի դասերի թիվը, ուժեղացնել ռուսաց լեզվի դասատուների պատրաստման տեմպը:

Դեռ մինչև այժմ էլ մեր դպրոցներում չի վերացված յերկրորդտարեցիությունը: Դեռևս լրիվ չափով ծավալված չէ դպրոցների միջև սոցիալիստական մրցությունը՝ ուսման վորակի բարձրացման համար: Դեռ ևս քիչ չէ այնպիսի միջնակարգ դպրոցների թիվը, վորոնք չեն տալիս բարձրագույն ուսումնական հաստատությունն ընդունվելու համար անհրաժեշտ բավարար գիտելիքներ:



Լուսժողկոմատը, լուսբաժինները, դպրոցների դիրեկտորները պետք է ամենալուրջ ուշադրությունը նվիրեն դպրոցների աշխատանքին, ուսման վորակը բարելավելու և դպրոցում ուսման աշխատանքի դրվածքը սիստեմատիկաբար ստուգելու գործին:

6717 ուսուցիչներից 2817-ն ունեն ավելի քան հինգ տարվա աշխատանքի ստաժ: Բայց թերի միջնակարգ և լրիվ միջնակարգ դպրոցների դասատուներն իրենց կրթության մակարդակի տեսակետից դեռևս բավարար չեն:

Հայաստանի 17 շրջաններում ատեստավորված 2·607 ուսուցիչներից իրենց վորակով թերի միջնակարգ ու լրիվ միջնակարգ դպրոցներում դասավանդելու համար անհամապատասխան են գտնվել 557 հոգի (21,3 տոկոս): Միջնակարգ դպրոցի ուսուցչի անհատական կոչումն ստացել են ատեստավորված ուսուցիչների 7,2 տոկոսը: Սա նշանակում է, վոր Լուսժողկոմատը պետք է յեռանդուն միջոցներ ձեռք առնի միջնակարգ դպրոցի ուսուցիչների պատրաստման և վերապատրաստման գործում:

Դեռևս շատ թերություններ կան ուսուցիչների քաղաքական դաստիարակության գործը կազմակերպելու ուղղությամբ: Վո՛չ Լուսժողկոմատը, վո՛չ տարրական ու միջնակարգ դպրոցների աշխատողների արհմիությունը, վո՛չ տեղական կուսկազմակերպությունները այդ հարցին դեռևս բավարար ուշադրություն չեն նվիրում:

Ուսուցչության գիտելիքների մակարդակը ցածր է: Սա յե հիմնական պատճառը, վոր աշակերտության գրագիտությունը մեր դպրոցներում դեռևս այն մակարդակին չի հասել, ինչ վոր պահանջում են մեզնից Կենտկոմի ու Ժողկոմխորհի վորոշումները: Դուք գիտեք, վոր լուսավորության ժողովրդական կո-

մինստրի պաշտոնում աշխատելիս են լցվել մի չորս հակահեղափոխականներ (Դր. Սիմոնյան, Աշրաֆյան, Ն. Ստեփանյան, Ա. Ցեղխաղարյան): Այդ հանգամանքն ստեղծել է այնպիսի պայմաններ, որ լուսավորության ֆրոնտի առանձին ոլորտներում խցկվել են հակահեղափոխական — տրոցկիստական — դաշնակցական — նացիոնալիստական տարրեր: Հարկավոր է նախ մեծ աշխատանք կատարել կադրերի ընտրության ու դաստիարակման ուղղությամբ, լուսավորության ֆրոնտը մաքրել հակահեղափոխական տարրերից, կազմել և հրատարակել նոր դասագրքեր, վորոնք դաստիարակեն մեր ուսանողությանը, մեր աշակերտությանը՝ սոցիալիզմի, կոմունիզմի վոգով: Սա նշանակում է, վոր մենք պետք է խորացրած աշխատանք կատարենք: Այս տեսակետից մենք դեռ շատ քիչ բան ենք արել և այն, ինչ արել ենք, մեզ չի կարող բավարարել:

Կադրերի տեսակետից չափազանց մեծ բացեր ունենք մենք, մանավորապես Լուսժողկոմատի ապարատում: Այսօր էլ դեռ Լուսժողկոմատը չի ապահոված կուսակցական վորակյալ կադրերով, ճոխված ու լավ կազմակերպված մի կոլեկտիվով, վորը կարողանար իր ժամանակին մերկացնել դասակարգային թշնամուն, վորը կարողանար վճռականորեն և արագ կերպով վերացնել վնասարարության հետքերն աշխատանքի այդ ֆրոնտում:

Սա, ընկերնե՛ր, չի նշանակում, վոր մենք լուսավորության ֆրոնտում չունենք այնպիսի կադրեր, վորոնք նվիրված են մեր կուսակցությանը, վորոնք անձնվիրաբար ու յեռանդով աշխատում են մեր ժողովրդական լուսավորության, մեր սոցիալիստական խորհրդային դպրոցի համար: Հարկավոր է, վոր մեր Կենտրոնական Կոմիտեն միջոցներ ձեռք առնի և



կարճ ժամանակամիջոցում այդ ֆրոնտն ապահովի կուսակցական վորակյալ կադրերով:

Ուսուցիչների շարքերը տեղ-տեղ բավականաչափ խճողված են չստուգված, նույնիսկ խորթ մարդկանցով, վորոնք օտարել են սոցիալիստական շինարարության այդ կարևորագույն ճակատամասը, աճող սերնդի դաստիարակության գործի ասպարեզը: Լուսժողկոմատը և ժողովրդական կրթության մարմինները — կորցնելով քաղաքական զգաստությունը, մոռացել են յերիտասարդությունը նվաճելու համար դասակարգային թշնամու կողմից մղվող պայքարի մասին:

Լուսժողկոմատը դեռևս շատ բան պետք է անի նաև մեր դասագրքերը նացիոնալիստական բովանդակությունից ազատելու և առողջացնելու համար: Այդ բովանդակությունն առատ կերպով մացրել էյին մեր դասագրքերում այդ գործի մեջ սողոսկած հակահեղափոխական-նացիոնալիստական տարրերը:

Դասագրքերի գործը Լուսժողկոմատում տնօրինում էր տրոցկիստ-նացիոնալիստ Ա. Ցեղխաղարյանն անձամբ: Հայոց լեզվի և գրականության դասագրքերը կազմում էյին հակահեղափոխական նացիոնալիստներ՝ Նորենցը, Վանանդեցին և ուրիշները:

Պետք է ասել, դասագրքերը կազմելուն մասնակցող մեր կոմունիստները հսկողություն ունենալու փոխարեն կորցրել էյին իրենց քաղաքական զգաստությունը և յենթարկվել էյին նացիոնալիստական գերքավորումների (Վարդունի, Ս. Դավթյան և ուրիշներ):

Դասագրքերը, վորպես կանոն, զուրկ էյին արդիականությունից. մեր սոցիալիստական շինարարությունը նրանց մեջ տեղ չեր գտնում:

Դասագրքերն աչքի էյին ընկնում ազգային սահմանափակվածությամբ: Մեր յեղբայրական հանրա-

գեստությունների կյանքը նույնպես իր արտացոլումը չէր գտնում այդ դասագրքերում: Կլասիկների վերականգնման անվան տակ դասագրքերը լցրել էյին նացիոնալիստական բովանդակություն ունեցող նյութերով: Գերակշռող տեղը տրամադրում էր հակահեղափոխականներ Բակունցին, Թոթովենցին, Ալազանին, Նորենցին, Գ. Մահարուն և յերկերեսանի Խանջյանի ճառերին ու յելույթներին: Գրողների բնութագրեր կազմելը հանձնարարվում էր Վանանդեցուն և ուրիշներին:

Ռաֆֆին, Հ. Հովհաննիսյանը, Ռ. Պատկանյանը, Ս. Շահազիզը ներկայացված էյին ցայտուն նացիոնալիստական բնույթ ունեցող հատվածներով: Աննշան տեղ էյին գրավում Հ. Թումանյանը, Ղ. Աղայանը, Պ. Պռոշյանը, Մ. Նալբանդյանը և ուրիշները:

Դասագրքերը չէյին պարունակում հակակրոնական բնույթի նյութեր. նրանք չունեյին նաև դեպի սոցիալիստական հայրենիքը սեր և նվիրվածություն դաստիարակող բնույթ:

Անհրաժեշտ է, վոր Լուսժողկոմատն ամենաշտապ կարգով վերանայի հայոց լեզվի և գրականության բոլոր դասագրքերը, նոր, թարմ ուժեր, փորձված ուսուցիչներ, ամբողջ գրողներ ու կոլեկտիվներ մասնակից անի դասագրքեր կազմելու գործին: Ժամանակն է, վոր խորհրդային դպրոցականին տանք լավորակ դասագրքեր:

Մանկական գեղարվեստական գրականության հրատարակությունը լիովին չի բավարարում մեր դպրոցականին, վոչ իր քանակով, վոչ էլ վորակով: Մինչեվ այժմ դեռ չեն պատրաստվել մանկական գրողների կադրեր:

Միանգամայն անբավարար քանակով են հրատարակվում մանուկների համար Հ. Թումանյանը, Ղ.



Աղայանը և ուրիշները: Մանկական հանրամատչելի գիտական գրականություն նույնպես չկա: Մանկական գեղարվեստական լավագույն գրականության թարգմանաբար հրատարակված է միանգամայն անբավարար չափով:

Դրությունն ավելի լավ չէ նաև մեր ԲՈՒՀ-երի ծրագրերի և դասագրքերի գործում: Ուսումնական պլանները հարմարեցնել դասախոսական կադրերին— ահա այդպես էր Պետհամալսարանի պրակտիկան:

Անհրաժեշտ է, վոր Լուսժողկոմատն զբաղվի ուսուցման վորակը բարձրացնելու, ինչպես նաև պրոֆեսորական-դասախոսական անձնակազմի գաղափարական-քաղաքական մակարդակը բարձրացնելու հարցերով:

Հաշվետու ժամանակաշրջանում բարելավվել է մանուկների ընդգրկումը նախադպրոցական հաստատություններում: Մանկապարտեզներն ընդգրկել են 23.609 յերեխա: Բայց չափազանց հետ է մնում ադրբեջանյան և քուրդ բնակչության յերեխաների ընդգրկումը: Շատ վատ հիմքերի վրա յե դրված ադրբեջանյան և քրդական մանկապարտեզների համար նախադպրոցական աշխատողներ պատրաստելու գործը: Այստեղ ակնհայտ է Լուսժողկոմատի նախկին ղեկավարների վնասարար աշխատանքի արդյունքը: Նրանք պակաս վնասարարություն չեն արել նաև անգրագիտության վերացման գործում: Դեռ ևս 1935 թ. ռապորտներ ու աչք ծակող զեկուցումներ էյին գրվում այն մասին, թե Հայաստանում չափահաս բնակչության անգրագիտությունը լիովին վերացված է: Այնինչ դեռևս ընթացիկ տարում մեր առջև կանգնած է չափահաս բնակչության միջից անգրագիտությունը վերացնելու խնդիրը:

Իրենց աշխատանքը դպրոցում բարելավելու մա—

սին լրջորեն պետք է մոտածեն կոմյերիտական և պիոներական կազմակերպությունները: Նրանցից պահանջվում է ավելի մեծ կազմակերպվածություն և պայքար՝ հանուն օրինակելի դպրոցի:

# ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ՅԵՎ ԱՐՎԵՍՏ

Շնորհիվ աշխատավորների չտեսնված կուլտուրական աճման և այն հսկայական ուշադրության ու հոգատարությունը, վոր ցուցաբերում է Լենին-Ստալինի կուսակցությունը ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի զարգացման նկատմամբ, մեզ մոտ, Հայկական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետության մեջ, ծաղկում են գրականությունը և արվեստը:

Այս բնագավառում ևս մեր նվաճումները ձեռք ենք բերել անողոք պայքար մղելով ժողովրդի թշնամիների՝ հակահեղափոխական տրոցկիստական-դաշնակցական նացիոնալիստական — սպեցիֆիկյան տարրերի դեմ: Այդ հակահեղափոխականները յերկար տարիներ ղեկավար պաշտոնների սողոսկելով, ջանք չեյին խնայում արգելակելու մասսաների կուլտուրական վերելքը:

Հայկական կուլտուրայի պաշտպանի դիմակով քողարկվելով, յերկերեսանի տրոցկիստ-նացիոնալիստ Խանջյանը և նրա գործակիցները գործնականում պայքարում եյին անցյալի կուլտուրական ժառանգության քննադատական յուրացման վերաբերյալ Լենին-Ստալինի կուսակցության պահանջների դեմ: Նրանք Հայաստանի աշխատավորներից թաքցնում եյին հայկական գրականության նվաճումները: Նրանք մա-



հուդի տակ եյին պահում և չեյին հրատարակում այնպիսի դեմոկրատիկ գրողների գործերը, ինչպիսիք են՝ Միքայել Նալբանդյանը, Պերճ Պռոշյանը, Ղազարոս Աղայանը, Ալեքսանդր Ծատուրյանը, դրանց հայտարարելով ռեակցիոներ ու յերկրորդական գրողներ:

Հակահեղափոխական Խանջյանն ու նրա գործակիցները ժողովրդից թաքցնում եյին ժողովրդական ստեղծագործության ամբողջ հարստությունը, հին և միջնադարյան պոեզիայի մարգարիտները, արգելքներ ստեղծելով այդ ամբողջ հարուստ կուլտուրական ժառանգությունը յուրացնելու գործում:

Կարող եք հարցնել, թե ինչո՞ւ նացիոնալիստներն այս ամենը ծածկում եյին: Մենք կարծում ենք, ընկերնե՛ր, վոր մեր անցյալի կուլտուրան մահուդի տակ պահելը, պրովոկացիա յեր նացիոնալիստական տարրերի կողմից, մասնավորապես յերկերեսանի Խանջյանի կողմից, վորոնք ձգտում եյին գործը ձևացնել այնպես, վոր իբր թե մեզ մոտ ազգային կուլտուրան ճնշվում է:

Դրանք եյին, վոր ամբողջ տարիներ ձգձգում եյին հայկական պոեզիայի անտոլոգիայի լույս ընծայումը, վորը նախապատրաստվում եր պրոլետարական մեծ գրող Մաքսիմ Գորկու նախաձեռնությամբ:

Միայն այն ժամանակ հաջողվեց իր ամբողջ ծավալով ձեռնարկել գրական ժառանգության մասսայականացման և քննադատական յուրացման գործին, յերբ հայ կուլտուրայի այդ վնասարարները մերկացվեցին: Միայն ընթացիկ տարում կուսակցության Կենտկոմի նախաձեռնությամբ նշվում են այնպիսի խոշոր գրական գործիչների հոբելյանները, ինչպիսիք են՝ հեղափոխական-դեմոկրատ Մ. Նալբանդյանը, շահագործող դասակարգերին մերկացնող դեմոկրատ

ականավոր գրողներ՝ Դուրյանը և Ալազանը, հայ սոցիալիստական գրականության հիմնադիր Գաբրիել Սունդուկյանը, բանաստեղծ Ալեքսանդր Ծատուրյանը, միջնադարի խոշորագույն աշխարհիկ դեմոկրատ բանաստեղծ Ֆրիկը:

Միայն այս տարի է սկսված խոշոր գիտական նշանակություն ունեցող և Վաղարշապատի գիտական մատենադարանում պահվող ձեռագրերի ուսումնասիրության և հրատարակման գործը: Մինչև այժմ՝ վոչինչ արված չի յեղել դարերի ընթացքում իր ազգային ազատագրության համար պայքարող հայ ժողովրդի կյանքի ամենաարժեքավոր փաստաթղթերը հավաքելու և ուսումնասիրելու գործում:

Դր. Սիմոնյանը, Ալազանը, Բակունցը և այլ հակահեղափոխականներն ամեն կերպ խանգարում եյին Հայաստանի խորհրդային գրողներին՝ համախմբվելու կուսակցության գծի շուրջը:

Հարկավոր է ուշադրություն կենտրոնացնել Հայաստանի սոցիալիստական շինարարության ակտուալ հարցերի վրա, հայ ժողովրդի կյանքի հիմնական խնդիրների վրա, մեր ժողովրդական մասսաների այն պայքարի վրա, վորն ուղղված է ժողովրդի թշնամիների դեմ՝ հակահեղափոխական տրոցկիստների, դաշնակների դեմ: Հարկավոր է արվեստի ու գրականության ասպարեզում արտացոլել այնպիսի մի խոշոր թեմա, ինչպիսին է հայ ժողովրդի անցյալ պայքարը ներքին և արտաքին շահագործողների դեմ — դաշնակցության և արտաքին իմպերիալիզմի դեմ, ցույց տալով, թե ինչպես Լենինի—Ստալինի կուսակցությունը փրկեց հայ ժողովրդին այդ շահագործողների ճիրաններից:

Հարկավոր է ցուցադրել մեր շինարարությունը, կոլտնտեսությունները, յերիտասարդությունը, կոմ-



յերիտականներին և կոմյերիտուհիներին: Այս է թե՛ մեր գրականության, և թե՛ մեր թատրոնի, կինոյի և արվեստի այլ բնագավառների զարգացման ստեղծագործական ծրագիրը:

Իսկ կուսակցության գիծն ինչպե՞ս եյին «մեկնաբանում» յերկերեսանի—տրոցկիստ նացիոնալիստները Խանջյանի գլխավորությամբ: Խանջյանի հանձնարարությամբ Հայկինոյում պատսպարվել եր արվեստի աշխատողների ժողով, վորտեղ դաշնակ Բակունցը և ուրիշները, Խանջյանի ցուցումով, աշխատում եյին անցկացնել իրենց հակահեղափոխական դրույթները: Նրանք պահանջում եյին, վորպեսզի կինոն բանվորների և գյուղացիների հեղափոխական կռիվն արտահայտող նկարների փոխարեն ցուցադրի դաշնակ ավանտյուրիստների հարձակումն Օսմանյան բանկի վրա, առաջարկում եյին կինոնկար պատրաստել հակահեղափոխական դաշնակ—խմբապետ Անդրանիկի մասին:

Գրականության և արվեստի հարցերի վերաբերյալ կուսակցության գծի այնպիսի կոպիտ աղավաղումը հակահեղափոխականների կողմից վոչ միայն սանձարձակ եր դարձնում արվեստի և գրականության հակախորհրդային նացիոնալիստական տարրերին, այլև մոլորեցնում եր ազնիվ խորհրդային գրողներից, նկարիչներից, կոմպոզիտորներից և արվեստի մյուս ասպարեզի գործիչներից վոմանց:

Հայաստանի պրոլետարական գրողների ասոցիացիան, վոր ՌԱՊՊ-ի ֆիլիալն եր, իր գոյության վերջին տարիներում դարձավ այնպիսի մի կազմակերպություն, վորը հետ պահեց խորհրդային գրականության զարգացումը: Ռապպականությունը Հայաստանում միանում եր նացիոնալիզմին:

Թվում եր, թե ՀամԿ(բ)Կ Կենտկոմի 1932 թ.

ապրիլի 23-ի «Գրական-գեղարվեստական կազմակերպությունների վերակառուցման մասին» պատմական վորոշումից հետո, Ալազանը, Վանանդեցին, Նորենցը և ուրիշները, վորպես Ռապպականության ներկայացուցիչներ, պետք է հեռացվեյին ղեկավարությունից:

Իսկ իրականում ի՞նչ պատահեց:

Յերկերեսանի Խանջյանն ավերբախական այդ տականքներին հեռացնելու փոխարեն՝ նրանց ոգնության է տալիս ուրիշ՝ յերդվյալ նացիոնալիստների խմբակի՝ «Նոյեմբեր» գրական խմբակի անդամներ՝ Բակունցին, Մահարուն և մյուսներին և այդ բանդայի գլուխ է կանգնեցնում լրտես Դ. Սիմոնյանին:

«Նոյեմբեր» խմբակը, վոր առաջ եր յեկել 1925 թ., Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի նացիոնալ-ուկլոնիստական-սպեցիֆիկյան ղեկավարության աջակցությամբ, սնվում եր սպեցիֆիկների հակահեղափոխական թեորիայով, վորը ժխտում եր Հայաստանում պրոլետարական գրականության ստեղծելու անհրաժեշտությունը և հնարավորությունը, հայկական խորհրդային գրականությունը հակադրում եր ռուսական խորհրդային գրականությանը:

Հենց այդ խմբի ձայնափողն եր հանդիսանում գրող Մ. Արմենը, վորն ապրիլի 23-ի վորոշումից հետո հանդես յեկավ «Ազգային հատկանիշների խրտացման» վերաբերյալ «տեսությամբ», վորն ըստ եյության մարտնչող նացիոնալիզմի պրոպագանդ եր:

Այդ նացիոնալիստական խմբակն սկսեց իր շուրջը համախմբել ինտելիգենցիայի հակախորհրդային շովինիստական տարրերին: Բակունցը, Ալազանը, Վանանդեցին և ուրիշները մերկացվեցին վորպես հակահեղափոխական տրոցկիստական տեռորիստներ:

Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի ծավալած բոլշե-



վիկյան պայքարը հակահեղափոխական նացիոնալիզմի դեմ, հանուն «ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական» կուլտուրայի, ունեցավ այն հետևանքը, վոր փշրվեցին այն արգելակները, վորոնք ստեղծել եյին հակահեղափոխական տարրերը մեր գրականության զարգացման ճանապարհին: Սկսվեց գրական ստեղծագործական նոր վերելք:

Վերջերս գրող Մ. Արմենը հրապարակով դատապարտեց իր անցյալ կապն այդ հակահեղափոխական խմբի հետ և իր անցյալ նացիոնալիստական գրվածքները:

Մ. Արմենը պետք է վոր իսկապես մինչև վերջը վերակառուցի իրեն: Մեր նվաճումների ազդեցության տակ իր գրքերի հակահեղափոխականությունը խոստովանեց գրող Յե. Չարենցը: Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի անունով ուղարկած իր նամակում նա հայտարարում է.

«Յես նույնիսկ չեմ կասկածում, վոր իրոք իմ սխալներն ունեն նացիոնալիստական, հետևաբար և (սոսկում եմ ասել) հակահեղափոխական, ուրեմն և հակախորհրդային եյություն»:

Այս խոստովանությունը և իր սխալների ու վարմունքի քննադատությունը Չարենցին պարտավորեցնում են մինչև վերջը գիտակցել իր հանցանքը խորհրդային գրականության հանդեպ և գործնականում նոր-ստեղծագործական պրոդուկցիայով ապացուցել, վոր նա իսկապես դառնում է լիարժեք խորհրդային գրող:

Ժամանակն է, վերջապես, վոր Չարենցը լրիվ հաշիվ տա իրեն իր ամբողջ ուղու մասին և դադարեցնի

թե իր և թե գրականության հանդեպ յերկերեսանիություն անելը: Նա պետք է հասկանա, վոր ամենից առաջ հարկավոր է անկեղծություն:

Վերջին տարիների ընթացքում վերակառուցվեցին անցյալում «աշխատավորական գրողների» խըմբի մեջ մտնող և այդ ժամանակ խորհրդային գրականության խնդիրներում հստակ կողմնորոշում չունեցող գրողները՝ Ստ. Զորյանը, Դ. Դեմիրճյանը, Մ. Մանվելյանը և ուրիշները: ՀամԿ(բ)Կ կենտկոմի 1932 թ. ապրիլի 23-ի վորոշումից հետո նրանց կողմակերպությունը վերջնականապես լուծվեց:

Ընկ. Զորյանը մի շարք յերկերի մեջ, ինչպես որինակ՝ «Գրադարանի աղջիկը», «Հեղկոմի նախագահը» և այլն, տվել է դեպքեր ու պատկերներ, վորոնք առնված են խորհրդային իրականությունից: Նա մեզ ներկայացրել է նաև Հայաստանի նախահեղափոխական գավառական քաղաքի մի շարք բնորոշ գծերը («Մի կյանքի պատմություն»):

«Ռաշիդ» և «Նիգյար» վեպիկների մեջ գրող Դ. Դեմիրճյանը պատկերել է խորհրդային գյուղի կոլտնտեսային վերակառուցման համար մղվող պայքարը, ցույց տալով հայերի և ադրբեջանցիների ինտերնացիոնալ կապը:

«Անապատը ծաղկում է» և «Զարթոնք» վեպերում գրող Մ. Մանվելյանը ցույց է տալիս դասակարգային պայքարը գյուղում և կոլտնտեսային շինարարությունը:

Այս գրողներից մեր գրականությունը դեռ շատ բան ունի սպասելու: Այդ հեղինակները



վոչ միշտ և վոչ հավասար չափով են հասնում իրենց պատկերած յերևույթների խոր, սոցիալական վերլուծությանը: Նրանց յերկերն ունեն նաև գեղարվեստական տարբեր մակարդակ: Բայց նոր թեմատիկային նրանց կողմից ակտիվ կերպով անցնելը, մանավանդ Հոկտեմբերյան Սոցիալիստական Հեղափոխության 20-ամյակի կապակցությամբ, վկայում են մեր գրողների ստեղծագործական ճիշտ տենդենցների մասին:

Վերջին տարիների ընթացքում նրանք իրենց աշխատանքների համար մշակել են պլան՝ սոցիալիստական բովանդակությամբ գրվածքներ տալու ուղղությամբ: Պետք է ցանկանալ, վոր այդ գրողներն ավելի շուտ կարողանան ազատագրվել հին ազդեցությունների մնացորդներից և ավելի ակտիվ կերպով ձեռնամուխ լինեն սոցիալիստական շինարարության պատկերմանն իրենց յերկերում:

Վորպես խոշոր գրական-հասարակական յերևույթ պետք է գնահատել այն փաստը, վոր հակահեղափոխական նացիոնալիստներին մերկացնելուց հետո արտասահմանից խորհրդային Հայաստան է վերադարձել նախահեղափոխական շրջանի խոշորագույն վարպետ-պոետներից մեկը, ընկ. Ավետիք Իսահակյանը, վորն իր աչքով տեսնելով և համոզվելով սոցիալիստական շինարարության հսկայական հաղթանակներում, ակտիվ կերպով անցել է գրական-ստեղծագործական աշխատանքի:

Ավետիք Իսահակյանը մամուլում հրապարակած իր նամակում բացատրում է դեպի խորհրդային իշխանություն, դեպի խորհրդային հայրենիք գալու իր մոտիվները: Այդ մեզ վստահություն է ներշնչում, վոր հանձին Ավետիք Իսահակյանի, մենք կունենանք Խորհրդային Հայաստանի առաջավոր պոետներից մեկին:

Ներկայումս Խաչատրյանը մի պոեմ է գրում Վլադիմիր Իլյիչի մասին, այդ գրվածքի հիմք ընդունելով Լենինի մասին յեղած ժողովրդական փոլկլորը:

Վերջին հինգ տարվա ընթացքում զգալի նվաճումներ են ունեցել գրողներ՝ Ազատ Վշտունին, Նաիրի Զարյանը, Արազին, Սիրասը և ուրիշները, վորոնք տվել են մի շարք արժեքավոր յերկեր:

Ընկեր Ազատ Վշտունին վերջերս գրել է «Արշալույսին» պոեմը, վորտեղ պատկերում է մայիսյան ապստամբության հերոսների գնդակահարության եպիզոդներից մեկը: Սակայն, ընկեր Վշտունուն հարկավոր է ասել, վոր մարդկանց և իր կապերի նկատմամբ անխտրական լինելը լավ արդյունքի չի հասցնի:

Նաիրի Զարյանի վերջին շրջանի աշխատությունների թվին են պատկանում առաջնորդին նվիրված «Ստալին» և «Առաջնորդ» բանաստեղծությունները ու «Վերածնունդ» պոեման:

Գրող Արազին «Զրվեժի ցոլքերի մեջ» պատմվածքում, վորի ֆոնը հանդիսանում է Հայաստանի խոշոր կառուցումներից մեկը, տալիս է հին ինտելիգենցիայի վերակառուցումը և պատկերում է նոր մարդկանց— սոցիալիզմի ակտիվ կառուցողներին:

Գրող Սիրասը «Զգրված ուրենք» վեպի մեջ մերկացնում է դասակարգային թշնամուն, թաքնված վնասարար դաշնակին և դրա հետ մեկտեղ փորձ է անում լուծելու նոր ընտանիքի և մարդկանց փոխհարաբերությունների պրոբլեմը:

Գ. Սարյանը, բացի «Յերեք» պոեմից, վերջին տարիների ընթացքում լույս է ընծայել իսպանական հերոսական ժողովրդի հեղափոխական պայքարին նվիրված պոեմների մի ժողովածու: Բացի դրանից, վերջերս նա տվել է «Գեղջկուհու յերազը» պոեմը:

Իսպանական ժողովրդի հերոսական պայքարն իր



արտացոլումն է գտել նաև Հայաստանի շատ պոետների ու գրողների գրվածքներում:

Լենինին, Ստալինին նվիրված են Հայաստանի գրողների լավագույն գրվածքները: Բարձր գեղարվեստական արժեք է ներկայացնում հայկական ժողովրդական հեքիաթը Լենինի մասին («Լենին փաշա»), վորը թարգմանված է ռուսերեն և բազմաթիվ յեվրոպական լեզուներով:

***

Ժողովրդական ստեղծագործության օլիմպիադը, վորը նվիրված էր ՀԽՍՀ Խորհուրդների արտակարգ 9-րդ համագումարին, և վորը խորհրդային Հայաստանի աշխատավորների քաղաքական-կուլտուրական աճի գեղեցիկ օրինակներից մեկն էր, յերևան բերեց ժողովրդի մեջ թաքնված հսկայական ստեղծագործական ուժեր:

Ընկեր Ստալինին նվիրված բազմաթիվ բանաստեղծություններն ու յերկերը, վորոնք հնչեցին գյուղերում, շրջաններում և Յերևանում, վկայում են հայ ժողովրդի անսահման սերը դեպի ամբողջ աշխարհի աշխատավորների առաջնորդ մեծ Ստալինը:

Հայաստանի խորհրդային գրականության ձեռք բերած մեծ հաջողությունները, հատկապես վերջին շրջանում, թեմատիկայի մեջ տեղի ունեցած բեկումը դեպի հայ ժողովրդի կյանքի ակտուալ խնդիրները վկայում են, վոր Հայաստանի գրողներն՝ ամբողջությամբ վերցրած՝ կանգնած են զարգացման ճիշտ ճանապարհի վրա, վոր նրանք ակտիվ կերպով լծվել են խորհրդային գրականության զարգացման գործին, մի գրականություն, վորը գեղարվեստորեն ու լիարժեք կերպով արտացոլում է Լենինի-Ստալինի կուսակցության մեծ աշխատանքը, մեր սքանչելի խորհրդային սոցիալիստական իրականությունը:

Անհրաժեշտ է ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Մարտյան Պլենումում ընկեր Ստալինի տված զեկուցման հիման վրա, ինքնաքննադատության ծավալման հիման վրա, մինչեվ վերջը մերկացնել վնասարար նացիոնալիստական աղավաղումների մնացորդները, վորոնք դեռ ամբողջությամբ վերացված չեն Հայաստանի խորհրդային գրողների մի քանի ողակներում:

Բոլշեվիզմին տիրապետելը, վորպես տվյալ ետապի հիմնական լոզունգ, կատեգորիկ պահանջ է հանդիսանում նաև Հայաստանի բոլոր խորհրդային գրողների համար, մանավանդ, վոր մեր Գրողների Միության մեջ յերկար ժամանակ գործել են հակահեղափոխական — նացիոնալիստները, վորոնք խանգարել են գրողների կադրերի գաղափարական-քաղաքական դաստիարակությանը և նրանցից մի քանիսի վրա ունեցել են իրենց ազդեցությունը:

Խորհրդային Գրողների Միության հիմնական խնդիրներից մեկն է հանդիսանում յերիտասարդ գրական կադրերի դաստիարակությունը և առաջքաշումը, վորի վրա քիչ է ուշադրություն դարձված յեղել:

Այնպիսի յերիտասարդ գրողներ, ինչպես՝ Սարմենը, Հր. Քոչարը, Հ. Շիրազը, Գ. Հովնանը, Աշավինը, Ս. Վահունին և ուրիշները, պետք է միությունից ստանան անհրաժեշտ ոգնություն՝ իրենց գաղափարական– քաղաքական և կուլտուր–գեղարվեստական մակարդակը բարձրացնելու գործում:

Մեր գրական կադրերի գեղարվեստական–քաղաքական մակարդակը բարձրացնելու գործում կարեվորագույն դեր է պատկանում մարքսիստական–գրական քննադատությանը, վորը մեզանում լուրջ թերություններ ունի: Դեռևս մինչեվ այժմ մեր գրական քննադատության վրայից մասի մեջից չի վերացվել ֆորմալիզմի և վուլգար սոցիոլոգիզմի ազդեցությունը: Ակներեվ կերպով անբավարար է քննադատության կոնկրետ ոգնությունը գրողներին:



Մեր գրական քննադատությունը խիստ շատ բան ունի անելու մեր հարուստ գրական ժառանգության հետազոտության և մեր անցյալի գրական հոսանքների ճիշտ գնահատության ասպարեզում:

Հակահեղափոխական– տրոցկիստ– նացիոնալիստների վնասարար ձեռքը գործել է նաև արվեստի բնագավառում: Նրանք իրենց դավաճանական գործունեությամբ աշխատում եյին ճիշտ ուղուց շեղել մեր թատրոնը, կերպարվեստը, կինոն, յերաժշտությունը:

Ինքնաքննադատության ճնշումը, այդ բնագավառում լավագույն ուժերի կողմից յերեվան բերվող ամեն մի նախաձեռնության խեղդումն իր բնի մեջ, մոնոպոլ դրություն ստեղծելը նացիոնալիզմով վարակված անձնավորությունների խմբերի համար, խնամիությունն ու փոխադարձ յերաշխավորությունները,— ահա հակահեղափոխական-նացիոնալիստ Թանջյանի մեթոդներն արվեստի «ղեկավարման» բնագավառում: Այդ ճանապարհով արգելակվում եր ինքնուրույն դրամատուրգիայի աճումը, այդ կերպ դանդաղեցնում եյին կերպարվեստի, յերաժշտության և այլ բնագավառների զարգացման տեմպը:

Այդպիսի քաղաքականության շնորհիվ մեր թատրոնը, վորն ունի հիանալի դերասանական կադրեր, չի կարողացել տալ նոր, խորհրդային, լիարժեք, գաղափարապես հագեցած, գեղարվեստորեն բարձրորակ ինքնուրույն պիեսներ, վորոնք մեր հանդիսականի առջև բաց անեյին մեր հարուստ սոցիալիստական իրականության պատկերը:

Վորպես գրական յերևույթ պետք է նշել այն

Զանգվածները, վոր աճում են դրամատուրգների նոր կադրեր, սակայն մեր թատրոնները և Գրողների Միությունը վոչ մի աշխատանք չեն կատարում նրանց մեջ:

Մեր թատրոններում դեռ վերացված չէ դրամատուրգների մեծամիտ անտեսումը և դրամատուրգների ու թատրոնի միջև արհեստական կերպով ստեղծված խզումը, վորի հետևանքով դրամատուրգը և թատրոնը օրգանապես չեն կապվում միմյանց հետ: Թեև մենք ունենք փորձված ռեժիսորներ (օրինակ՝ վաստակավոր ռեժիսոր Ա. Գուլակյանը, վաստակավոր դերասան Վաղարշյանը և ուրիշները), այնուամենայնիվ, պետք է նշել, վոր բավականաչափ բարձր չէ մեր թատերական ղեկավար կադրերի գաղափարական-քաղաքական մակարդակը:

Մեծամտություն, ինդիվիդուալիստական հոգեբանությունը հիմնական չարիքներից մեկն է հանդիսանում, վորը խանգարում է մեր թատերական կադրերին լրջորեն ու հիմնավորապես ձեռնամուխ լինելու թատրոնի աշխատանքի վորակի բոլշևիկյան բարձրացման գործին:

Ուստի մեր թատրոնների աշխատանքի արմատական վերակառուցումը՝ բոլշևիզմին տիրապետելու հիման վրա, հեղափոխական զգաստությունը բարձրացնելու, վորակի համար համառորեն պայքարելու հիման վրա,— խորհրդային հանդիսականների ամենալայն, հրամայական պահանջն է հանդիսանում:

Վերջին ամիսների ընթացքում, Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության 20-ամյակի կապակցությամբ, զգալի աշխուժացում է նկատվում դրամատուրգների մեջ, վորոնք մի շարք պիեսներ են գրել՝ թատրոնների պատվերներով: Այդ պիեսներից ավելի քան 100-ը ներկայացված են կոնկուրսի: Դր-



րանցից մոտ 15 պիես նախատեսված է պարգևատրման: Պիեսների մեծ մասի բովանդակությունը սոցիալիստական շինարարությունն է, պայքարը ժողովրդի թշնամիների դեմ և նոր կենցաղի պրոբլեմները:

Այսպես օրինակ, դրամատուրգ Դ. Դեմիրճյանի «Կապուտան» պիեսի բովանդակությունը Սևան-Զանգու կասկադի շինարարությունն է, Արազու պիեսի բովանդակությունը նոր ընտանիքի հարցերն են և այլն:

Մեր թատրոնի նվաճումներից մեկը պետք է համարել մեր հանդիսականին յեղբայրական հանրապետությունների ժողովուրդների ստեղծագործության հետ ծանոթացնելը: Գ. Սունդուկյանի անվան պետական առաջին կարմրադրոշ թատրոնն այս տարի բեմադրեց վրացական դրամատուրգ Ս. Շանշիաշվիլու «Արսեն» պիեսը, վորն ընդունվեց խանդավառությամբ, իսկ 2-րդ Պետթատրոնը բեմադրեց ադրբեջանյան դրամատուրգ Ջ. Ջաբարլիի «1905 թիվը» պիեսը:

***

Սոցիալիստական կոնկրետ իրականությունից կտրված լինելը բնորոշ գիծ էր նաև Հայաստանի վոչ փոքրաթիվ նկարիչների գործերում: Այդ նկարիչները խորանում էյին ինքնամփոփ պեյզաժի մեջ, խուսափում էյին մեր շինարարությունը, մեր հերոսներին, բանվորներին, կոլտնտեսականներին, ստախանովականներին նկարելուց:

Կենդանի, իրական, սոցիալիզմ կառուցող մարդը հազվագյուտ հյուր էր մեր նկարիչների կտավի վրա: Բայց սոցիալիզմի հաղթանակը, մեր հսկայական նվաճումներն ազդեցին նաև մեր նկարիչներից շատերի գիտակցության վրա: Այնպիսի մի խոշոր վարպետ, ինչպիսին Մ. Սարյանն է, վոչ միայն անցավ սոցիա-

լիստական շինարարության թեմատիկային, այլև տվեց նկարներ, որոնք պատկերում են մեր պանծալի Կարմիր Բանակի, մեր սոցիալիստական հայրենիքի պաշտպանի հզորությունն ու արիությունը:

Ժողովրդական նկարիչներ՝ Փ. Թերլեմեզյանը և Հ. Կոջոյանը, վաստակավոր նկարիչներ՝ Գյուրջյանը, Առաքելյանը, վաստակավոր քանդակագործ Ս. Ստեփանյանը և շատ ուրիշները, իրենց նոր գործերում անցել են ժամանակակից և ակտուալ թեմատիկայի:

Վրացական նկարիչների օրինակով, որոնք պատրաստել էյին ընկեր Ստալինի կյանքին ու գործունեությանը նվիրված ցուցահանդեսը, հայ նկարիչները կոլեկտիվ կերպով պատրաստում են ստալինյան Սահմանադրությունն արտացոլող ցուցահանդես: Այս քաղաքականապես կարևոր ու մեծ աշխատանքը հսկայական դաստիարակչական դպրոց կհանդիսանա մեր նկարիչների համար:

Այդ աշխատանքի շնորհիվ նրանք քաղաքականապես կաճեն, յերեսներն ուղղակի կդարձնեն դեպի սոցիալիստական կենդանի ու բազմազան իրականությունը, և յեթե լավ աշխատեն՝ զգալի նվաճումներով կդիմավորեն Հոկտեմբերի 20-ամյակը:



Կինոյի բնագավառում մենք ունենք հետամնացություն: «Պեպո»-յից հետո, որն արտադրվեց 1935 թվականին, Հայկինոն չի տվել ոչ մի ֆիլմ, թեպետ նա ունի գեղարվեստական և այլ ստեղծագործական աշխատողների լավ կադրեր և քիչ միջոցներ չի ծախսում:

Յերևանի խոշոր կինո-թատրոնի «Մոսկվա» կինոյի շինարարությունը խայտառակ կերպով ձգձգվեց և խիստ թանկ նստեց:



Պետք է ուղղակի ասել, որ Հայկինոյի ղեկավար ընկեր Դղնունին վատ է գլխավորում աշխատանքը, թեպետ յերկար տարիներ է, ինչ վարում է այդ գործը և գիտե կինո-արտադրությունը: Ինչպես յերևում է, այդ ընկերը վերակառուցվելու տրամադրություն յերևան չի բերում:

Հայկինոյի առջև դրված է ամենալուրջ, պատասխանատու խնդիր՝ 1937 թվականին տալ լիարժեք «Զանգեզուր» ֆիլմը, որը կինո-արդյունաբերության գլխավոր վարչության կողմից մտցված է այս տարվա հոբելյանական ֆիլմերի ցուցակի մեջ:

Հայկինոյի աշխատողների կոլեկտիվը պետք է համառ ու համերաշխ կերպով աշխատի, որպեսզի ընթացիկ տարում արդարացնի իրեն:



Մեր իրականությունից առայժմ հետ է մնում հայկական կոմպոզիտորների աշխատանքը: Մինչև այժմ հավաքված, ուսումնասիրված և օգտագործված չեն ժողովրդական հարուստ յերգերը, որոնք ստեղծվում են հայ բանվորների և կոլտնտեսականների կողմից և որոնց մեջ յերգվում է պայծառ, ուրախ աշխատանքը, յերգվում է մեծ Ստալինը:

Ազգային օպերայի ստեղծման գործում, վերջին տարիների ընթացքում, մենք ունենք որոշ հաջողություններ: Ստեղծված են «Անուշ» և «Ալմաստ» օպերաները: Մշակման պրոցեսում է գտնվում Կ. Զաքարյանի «Մարջան» օպերան, որը լավ ընդունելության արժանացավ այս տարվա մայիսին Մոսկվայում, կոմպոզիտորների համամիութենական խորհրդակցությանը տեղի ունեցած դիտման ժամանակ:

Կոմպոզիտոր Հարո Ստեփանյանը պատրաստում է «Սասունցի Դավիթ» օպերան:

Եթե մենք լավ ամրացնենք ավերայի ղեկավարությունը, կարծում եմ, որ մենք այս ասպարեզում կկարողանանք հասնել մեծ եֆեկտի:

Իսկ առայժմ դրությունն այստեղ անբավարար է:

***

Հաշվետու շրջանի մեր աշխատանքների հանրագումարը տալիս, մենք պետք է առանձնապես նշենք այն նվաճումները, որ ձեռք ենք բերել կուլտուրայի, գիտության, գրականության և արվեստի այլև այլ բնագավառներում: Մենք այստեղ վստահորեն կարող ենք արձանագրել, որ կուլտուրայի, գիտության և արվեստի ասպարեզներում աշխատող մեր ինտելիգենցիան սերտորեն համախմբված է խորհրդային իշխանության, մեր կուսակցության շուրջը, որ նա իր գիտությունը, ստեղծագործական ջանքերը ի սպաս է դրել սոցիալիզմի շինարարության գործին, Լենին—Ստալինի կուսակցության գործին:

Թե այն նվաճումները, որ մենք ունենք գրականության և արվեստի բնագավառում, և թե հատկապես այս ասպարեզում յեղած թերությունները պարտավորեցնում են մեզ խորացնել աշխատանքի վերակառուցումն արվեստի, գրականության, գիտության, կուլտուրայի բոլոր ճակատներում:

Մենք պետք է ավելի շատ ուշադրություն հատկացնենք արվեստի աշխատողների գաղափարական-քաղաքական աճմանը, մոբիլիզացիայի յենթարկենք մեր բոլոր հնարավորությունները՝ արվեստի բնագավառում պատվով կենսագործելու համար այն մեծ խնդիրները, այն մեծ պահանջները, որ դրել է մեր առջև ընկեր ՍՏԱԼԻՆԸ:



# ԱՎԵԼԻ ԲԱՐՁՐԱՑՆԵՆՔ ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ԶԳԱՍՏՈՒԹՅՈՒՆԸ

## ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆ

Ժողովրդի ամենավոխերիմ թշնամիները՝ ֆաշիզմի տրոցկիստական – զինովևյան–բուխարինյան գործակալները, յերկերեսանիներն ու դավաճանները փորձում եյին քայքայել մեր տնտեսությունը, թուլացնել Խորհրդային Միության տնտեսական ու ռազմական հզորությունը, հեշտացնել ֆաշիստական պետությունների ռազմական հարձակումը մեր յերկրի վրա և ճանապարհ հարթել կապիտալիզմի ռեստավրացիայի համար: Նրանք արդյունաբերության մեջ և տրանսպորտում կազմակերպում եյին պայթեցումներ, հրդեհներ ու խորտակումներ, նրանք չարանենգորեն սպանեցին ընկեր Կիրովին, նրանք հակահեղափոխական–բանդիտական ցանց եյին ստեղծել՝ կուսակցության և կառավարության ղեկավարների դեմ տեռորիստական ակտեր կատարելու համար:

Այդ սրիկաների հետ ձեռք–ձեռքի տված գործում եյին հայկական հակահեղափոխական նացիոնալիստները՝ դաշնակները, սպեցիֆիկները, ռամկավարները՝ ոտարերկրյա հետախուզությունների այդ գործակալներն ու լրտեսները:

Չնայած որ ժողովրդի այդ թշնամիների՝ ճապոնա–գերմանական– տրոցկիստական– ֆաշիստական գործակալների կատարած հակահեղափոխական գործունեյությունը հայտաբերված է և նրանց ֆաշիստական դեմքը մերկացված է, այնուամենայնիվ, մենք հանգստանալու վոչ մի հիմք չունենք:

Ընկեր Ստալինն ամբողջ ժամանակ նախազգուշացնում է մեզ գոռոզության, ուռճվելու և ինքնահանգստացման վտանգից:

«... Պետք է վո՛չ թե որորել կուսակցությունը, այլ զարգացնել նրա մեջ զգաստությունը, վո՛չ թե քնեցնել նրան, այլ պահել մարտական պատրաստության վիճակում, վո՛չ թե զինաթափանել նրան, այլ սպառազինել, վո՛չ թե դեմոբիլիզացիայի յենթարկել, այլ պահել նրան մոբիլիզացիայի վիճակի մեջ...»:

Հայաստանի բոլշևիկների այս համագումարը պետք է անցնի հեղափոխական զգաստության էլ ավելի բարձրացման, բոլշևիկյան ծավալուն ինքնաքննադատության միջոցով մեր աշխատանքի թերությունները հայտաբերելու և վերացնելու նշանաբանի տակ:

Ընկեր Ստալինի նախաձեռնությամբ կատարված կուսակցական փաստաթղթերի ստուգումը կարեվորագույն կազմակերպական և քաղաքական միջոցառում հանդիսացավ մեր կուսակցության շարքերն ավելի ևս ամրապնդելու, կուսակցությունը թշնամական և այլ հակակուսակցական տարրերից մաքրելու համար:

Կուսակցական փաստաթղթերի ստուգումն ու փոխանակումն անցկացնելիս, մենք հաշվի առանք Հայաստանի պայմանների մի քանի առանձնահատկությունները, Հայաստանի, վորտեղ իր ժամանակին, ինչպես ձեզ հայտնի յե, գոյություն է ունեցել դաշնակների, նացիոնալիստների և ուրիշ հակախորհրդային տարրերի ազդեցություն: Կուսակցական փաստաթղթերի ստուգումը դժվարանում եր և այն պատճառով, վոր ՀԿ(բ)Կ Կենտկոմի, քաղկոմների և շրջկոմների աշխատանքի պրակտիկայում գոյություն ուներ հանցավոր թափթփված վերաբերմունք դեպի կուսակ-



ցական տնտեսությունը, կուսակցական փաստաթղթերը պահելու գործը, ինչպես նաև կուսակցական ապարատի աշխատողների ընտրության գործը: Կուսակցական փաստաթղթերի ստուգման աշխատանքը Հայաստանում մեծ դժվարություններով կատարվեց: Շատ կազմակերպություններում, այդ թվում նաև Յերևանի և Լենինականի քաղաքային կազմակերպություններում, ստուգումը կատարվեց կրկնակի ու յեռակի, 11 շրջաններում կատարված կուսփաստաթղթերի ստուգումը բեկանվել է ՀԿ(բ)Կ Կենտկոմի կողմից:

Հայաստանի կուսկազմակերպության կատարած կուսակցական փաստաթղթերի ստուգումն ու փոխանակումն հսկայական դեր խաղացին նրա շարքերի բոլշևիկյան աճման և ամրապնդման գործում: Կուսակցական փաստաթղթերի ստուգման և փոխանակման հետևանքով մերկացվեցին և կուսակցությունից դուրս շպրտվեցին հակահեղափոխական յերկերեսանիները, տրոցկիստները, նացիոնալիստները— դաշնակները և կուսակցության այլ թշնամի ու խորթ տարրերը, վորոնք խաբեությամբ կուսակցական տոմս եյին ստացել:

Վերջ տրվեց կուսակցական փաստաթղթերի պահպանման գործում գոյություն ունեցող թափթփվածությանը: Կուսակցական փաստաթղթերի ստուգումն ու փոխանակումն անպայմանորեն ոգնեցին կուսակցական աշխատանքի հետագա բարելավման գործին:

Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմը հաշիվ տվեց Համ. Կ(բ)Կ Կենտկոմի առաջ՝ կուսակցական փաստաթղթերի ստուգման աշխատանքի մասին: Ինչպես հայտնի յե, Հայաստանի կուսակցական կազմակերպությունների կատարած աշխատանքը՝ կուսակցական փաստաթղթերի ստուգման վերաբերյալ, հավանություն գտավ և հաստատվեց ՀամԿ(բ)Կ Կենտկոմի կողմից:

Իսկ ինչ վերաբերում է կուսակցական փաստաթղթերի փոխանակման հաշվետվությունը ներկայացնելուն, ապա այս հարցում մենք մի փոքր հետ մնացինք:

Կուսակցական փաստաթղթերի փոխանակումը վերջացնելուց հետո, Ամասիայի շրջկոմի նախկին քարտուղար Տեր-Վահանյանը մերկացվեց վորպես յերկերեսանի տրոցկիստ: ՀԿ(բ)Կ Կենտկոմը չվավերացրեց Ամասիայի շրջանի կուսակցական փաստաթղթերի փոխանակումը. այնտեղ ուղարկեց նոր աշխատող Հ. Գալստյանին, վորը կարողացավ մերկացնել Տեր-Վահանյանի վնասարարական գործունեությունը և նորից անցկացրեց կուսակցական փաստաթղթերի փոխանակումը: Այդ աշխատանքի հետևանքով, կուսակցությունից անիրավացիորեն հեռացված մի շարք ընկերներ նորից վերադարձվեցին կուսակցության շարքերը. դրա հետ միասին յերևան հանվեցին մի շարք յերկերեսանիներ, տրոցկիստներ, նացիոնալիստներ, դաշնակներ, վորոնց Տեր-Վահանյանը կուսակցական տոմս եր տվել: Այդ շրջանի կուսակցական փաստաթղթերի փոխանակման արդյունքներն արդեն հաստատված են Կենտկոմի կողմից:

Կուսակցական փաստաթղթերի փոխանակումից հետո, կուսակցությունից վտարվեց նաև Վաղարշապատի շրջկոմի քարտուղար Գ. Պետրոսյանը՝ իր տրոցկիստական անցյալը թաքցնելու համար: Մենք նպատակահարմար ենք համարում Վաղարշապատի շրջկոմի նոր քարտուղարի ընտրությունից հետո շարունակել Կենտկոմի սկսած աշխատանքները՝ այդ շրջանում կուսակցական փաստաթղթերի նոր փոխանակում կատարելու համար:

Վտարվածների կողմից տրված ապելյացիոն դիմումները քննելու մասին ՀամԿ(բ)Կ Կենտկոմի և ընկեր Ստալինի տված ցուցումներից հետո, Հայաստանի



Կ(բ)Կ Կենտկոմը պասիվության, ինչպես նաև սակավ կարևորություն ունեցող զանցանքի համար կուսակցությունից հեռացվածների ստուգում կատարեց և վերականգնեց կուսակցության շարքերում 561 հոգի, սակայն դեռևս չի կարելի այդ աշխատանքը ավարտված համարել: Մեր շրջկոմները դեռևս թույլ են կապված կուսակցական սկզբնական կազմակերպությունների հետ. ՀԿ(բ)Կ Կենտկոմի Կուսղեկավար Օրգանների բաժինը վատ է աշխատում, վորի հետևանքով էլ կուսակցությունից հեռացվածների վորոշ մասի հարցը, վոր պետք է քննվեր, չի քննվել: Այդ աշխատանքը Կենտկոմը պետք է կատարի:

ՀամԿ(բ)Կ Կենտկոմը թույլատրեց 1936 թ. նոյեմբերի 1-ից վերսկսել ընդունելությունը կուսակցության մեջ: Կուսակցության մեջ ընդունելու գործին Հայաստանի կուսակցական կազմակերպությունների մեծամասնությունը լրջությամբ վերաբերվեց: Կուսկազմակերպություններն ընդունելության ժամանակ ջոկում են ամենից ավելի ստուգված, կուսակցությանն ամենից ավելի հավատարիմ մարդկանց:

Սակայն պետք է նշել, վոր վորոշ կուսակցական կազմակերպություններ, այդ թվում նաև Յերևանի քաղաքային կուսակցական կազմակերպությունը, ընդունելության հարցերով անբավարար չափով են զբաղվել: Մի քանի կուսակցական կազմակերպություններ չեն աշխատում նոր անդամներ ընդունել կուսակցության մեջ, ստեղծում են ամեն տեսակ արգելքներ ու դժվարություններ: Այդ կազմակերպություններն ըստ յերևույթին չեն հասկանում, վոր հենց դրանով նրանք իրենց զրկում են գործնական աշխատանքի մեջ ստուգված լավագույն մարդկանցից— արդյունաբերության և գյուղատնտեսության ստախանովականներից և ինտելիգենցիայի առաջավոր ներկայացուցիչներից:

Հայաստանի կուսակցական կազմակերպությունները չպետք է մոռանան, որ կուսակցության մեջ ընդունելու գործը շատ լուրջ և կարևոր գործ է: Հարկավոր է ամենամեծ խնամքով և ընտրությամբ ընդունել մարդկանց կուսակցության շարքերը, որպեսզի խորթ, անարժան և թշնամի մարդուն հնարավորություն չտրվի ներս սողոսկել կուսակցության մեջ: ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՄԵՋ ՊԵՏՔ Է ԸՆԴՈՒՆԵԼ ՆՐԱՆՑ, ՈՎՔԵՐ ԱՆՍԱՀՄԱՆՈՐԵՆ ՀԱՎԱՏՈՒՄ ԵՆ ԼԵՆԻՆ-ՍՏԱԼԻՆԻ ԳՈՐԾԻՆ, ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՌԱՋՆՈՐԴԻՆ՝ ՄԵԾ ՍՏԱԼԻՆԻՆ (բուռն ծափեր):

ՀամԿ(բ)Կ Կենտկոմի վերջին Պլենումում ընկեր Ստալինի զեկուցումը և յեզրափակման խոսքը մեր կուսակցության պատմության մեջ կմնան որպես ստալինյան ղեկավարության բացառիկ փաստաթղթեր: Նրանք մեզ սովորեցնում են մեր շարքերի կազմակերպական վերակառուցման ստալինյան արվեստը, կուսակցության պայքարն ու ղեկավարությունը նոր, փոխված պայմաններում ապահովելու համար:

Ես ուզում եմ ձեր ուշադրությունը հրավիրել բոլշևիկյան ինքնաքննադատության և քննադատության հարցերի ծավալման վրա, քննադատությունն ու ինքնաքննադատությունը կադրերի ղեկավարության ու դաստիարակման հիմնական մեթոդ դարձնելու վրա, կուսակցական կազմակերպությունների աշխատանքի պրակտիկայի այնպիսի պայմաններ ստեղծելու վրա, առանց որի հնարավոր չէ ապահովել մասսաների վերահսկողությունը, ինչպես նաև վերահսկողությունը վերևից՝ յուրաքանչյուր աշխատողի վրա:

Կարելի՞ յե արդյոք ասել, որ անցած ամիսների ընթացքում, Համ. Կ(բ)Կ Կենտկոմի Պլենումից հետո,



մեր աշխատանքը լիովին արդեն վերակառուցված է: Այդպես կարծել՝ կոպիտ, անթույլատրելի սխալ կլիներ: Բայց նույնիսկ այն ըստ եյության ոչ մեծ աշխատանքը, որ կատարել է Հայաստանի Կոմկուսակցությունը Պլենումի որոշումներն իրագործելու համար, մեծ, դրական արդյունքներ է տվել:

ՀամԿ(բ)Կ Կենտկոմի և առաջնորդի ցուցումների ուսումնասիրությունն առաջ բերին կոմունիստների կողմից չտեսնված ակտիվություն, բոլշևիկյան քննադատությունը և ինքնաքննադատությունն այնպիսի աստիճանի բարձրացրին, որպիսին մինչև այդ դեռ չեր տեսել Հայաստանի Կոմկուսակցությունը: Մեր ղեկավար աշխատողներից ոմանք չդիմացան անցած ժողովներում ծավալված անխնա քննադատությանը: Շարքային կոմունիստները շատ փաստեր յերևան հանեցին, որոնց մասին մինչև այդ քիչ եր հայտնի ղեկավարներին: Իբրև այդպիսի քննադատության հետևանք կարելի յե բերել Թալինի շրջանի օրինակը:

Ճիշտ է, մեզ, Կենտկոմում, անհասկանալի չեր թվում Թալինի շրջանի արտաքուստ հանգիստ վիճակը, որտեղ տարեց-տարի պլանները կատարվում եյին, ճանապարհները շինվում եյին ո՛չ վատ, ո՛չ մի գանգատ չեր լսվում. 6 տարի նստած եր այդ շրջանում ընկ. Հ. Խորասյելյանը և ոչ ոք նրանից չեր գանգատվում, ինքն ել ոչ մի բանից և ոչ ոքից դժգոհ չեր: Վերջին ռայոնական կուսակցական ժողովում նրան սկզբում մի քիչ քննադատեցին, իսկ հետո մտցրին նոր ընտրվող շրջկոմի կազմի համար առաջադրվող թեկնածուների ցուցակում: Բայց հենց որ կոնֆերանսի պատգամավորները Կենտկոմի ներկայացուցչի քննադատական խոսքը լսեցին շրջկոմի քարտուղարի աշխատանքի մասին, այստեղ արդեն լիակա-

տար քննադատության ծավալվեց: Պարզվեց, վոր շրջկոմի քարտուղար Իսրայելյանը բոլորովին կտրված է մասսաներից, կոլտնտեսություններում չի լինում և քաղաքական աշխատանք չի կատարում: Նրա քթի տակ թշնամին քայքայում է կոլտնտեսությունների աշխատանքը:

Յերևան յեկավ տիպիկ ոպորտունիստի կերպարանքը, վորը հետ է մնացել և չի հասկանում կուսակցական խնդիրները:

Թալինի որինակը մեզ շատ բան է սովորեցնում: Ամենից առաջ նա խոսում է այն մասին, վոր Հայաստանի Կենտկոմն ինքը պետք է ոգնի ղեկավար ընկերների աշխատանքի մեջ յեղած թերությունների քըննադատության ծավալմանը:

Յեթե այդ ժողովում Համո Իսրայելյանի հասցեյին Կենտկոմի ներկայացուցիչը մի յերկու սուր ռեպլիկներ չաներ, սուր չդներ խնդիրը, Համո Իսրայելյանի մասին շատ քիչ բան կխոսվեր և նա կշարունակեր աշխատել մինչև տասը տարի լրանալը:

Թալինի որինակը ցույց է տալիս, վոր Իսրայելյանին մինչեվ այդ ժամանակը չեյին քննադատում այն պատճառով, վորովհետև տեղի կոմունիստները կարծում եյին, վոր յեթե նա ուղարկված է Կենտկոմի կողմից, չի կարելի նրան քննադատել, վորովհետև յեթե նրան քննադատում ես, նշանակում է, քննադատում ես Կենտկոմին: Նրանք կարծում եյին, վոր չի կարելի Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմին քննադատել, վորովհետև դրանով կդիպչես նրա հեղինակությանը:

Այդ սխալ պատկերացումը Կենտկոմի հեղինակության, Կենտկոմին քննադատելու մասին, ցավոք սրտի, գոյություն ունի վոչ միայն Թալինի կազմակերպության մեջ, այլև հանդես յեկավ նաև Յերևանի



կուսկազմակերպության վերջին կոնֆերանսում:

Թալինի որինակը խոսում է այն մասին, վոր մենք, Կենտկոմը, մեր շրջկոմների աշխատողներին լավ չենք ճանաչում: Կենտկոմի աշխատողներից և անդամներից քիչ մարդիկ չեն գնացել Թալին, բայց նրանք բոլորն էլ վոչ մի անգամ Կենտկոմում չեն խոսել շրջկոմի աշխատանքի վորևէ եյական թերության մասին: Ընդհակառակը, նույնիսկ առանձին ընկերներ շրջկոմի քարտուղարի մասին շատ դրական գնահատական եյին տալիս: Բայց կարո՞ղ եր արդյոք Կենտկոմն ընտրություններից դեռ շատ առաջ տեղեկանալ այն մասին, վոր Իսրայելյանը յերկար տարիներ նստելով այդ շրջանում, բյուրոկրատացել եր և կորցրել կուսակցական ղեկավարի գծերը: Իհարկե, կարող եր: Դրա համար հարկավոր եր ավելի լավ ստուգել շրջանային կոմիտեյի աշխատանքը, ավելի խիստ դատել, քան մենք դատում ենք յերբեմն, առավել ևս, վոր այդ շրջանում կուսակցական փաստաթղթերի ստուգման և փոխանակման ժամանակ թույլ եյին տըրվել ամենակոպիտ սխալներ: Մենք այդ բանը չարինք և, ինչպես տեսնում եք սխալվեցինք: Շրջանի շարքային կոմունիստների ոգնությամբ Կենտկոմի այդ սխալն այժմ արդեն ուղղված է:

Նման յերևույթներ կարող են տեղի ունենալ այն պատճառով, վոր Հայաստանի Կենտկոմի ապարատի աշխատանքները չեն դրվել այնպիսի մակարդակի վըրա, վորպեսզի հնարավոր լինի ժամանակին իմանալ, թե այս կամ այն շրջանային կոմիտեն կամ նրա քարտուղարն ի՞նչ է կատարում՝ կուսակցության վորոշումները և դիրեկտիվներն իրականացնելու համար: Կենտկոմի բաժինները հետ են մնում: Նրանք հաճախ չեն իմանում, թե ի՞նչ է կատարվում տեղում, իսկ յեթե մի շարք ընկերներ, բաժնի վարիչները կամ տե-

ղեկավարները, տեղում տեսնում են այս կամ այն բացը, նրանք այդ խնդիրը սուր կերպով չեն դնում: Տեղում միմիայն քարտուղարների հետ խոսելով, նրանք կարծում են, թե հարցը դրանով արդեն սպառվում է: Սա սխալ է, սա տնայնագործական մեթոդ է, վորը մեզ մնացել է նախորդ շրջանից և վորը մինչև այսօր էլ լիկվիդացիայի չենք ենթարկել: Այդ պետք է լիկվիդացիայի ենթարկել: Եթե կուսակցական ապարատն այնպես չաշխատի, վոր ամեն որ իմանա, թե այս կամ այն շրջկոմն ինչպե՞ս է աշխատում, ինչպե՞ս է կատարում կուսակցական դիրեկտիվները, իհարկե, մենք միշտ էլ կուշանանք: Այս մեր խոշոր բացերից մեկն է. սրա մասին պետք է լուրջ մտածել:

Նույնը պետք է ասել նաև շրջանային կոմիտեների մասին. նրանք էլ ուշ են իմանում, թե ի՞նչ է կատարվում սկզբնական կազմակերպություններում: Միկոյանի շրջանի Ռինդ գյուղում 1935 թվականին տեղի ունեցած պրովոկացիոն ելույթի մասին կուսակցության շրջկոմն իմացավ դրեթե մի ամիս հետո, երբ վոր Ներքգործժողկոմատը և կուսակցության Կենտկոմն այդ մասին արդեն համապատասխան վորոշում եյին ընդունել:

Կորվածության փաստեր հայտաբերվել են նաև Վաղարշապատի, Կիրովականի, Հոկտեմբերյան և Ապարանի շրջաններում:

Կուսակցական հաշվետու ընտրական ժողովներում կոմունիստները շատ սուր կերպով, բոլշևիկորեն եյին անդրադառնում կուսակցության առանձին անդամների կողմից դեպի կուսակցությունը ցուցաբերած վոչ անկեղծությանը, դեպի ժողովրդի թշնամիները ցուցաբերած լիբերալ վերաբերմունքին, անկախ կուսակցության այդ անդամների գրաված դիրքից: Նրանցից պատասխան եյին պահանջում և վորպես կանոն նրանց



թեկնածությունը բաց քննարկման ժամանակ մերժում եյին և հանում ցուցակներից:

Սակայն վոչ բոլոր ընկերները, վորոնք քննադատվում եյին, ճիշտ յեզրակացություններ հանեցին դրանից: Վոմանք վիրավորվեցին, վոմանք շարունակեցին համառել, իսկ տեղ-տեղ էլ եղան ինքնաքննադատությունը ճնշելու փաստեր: Սկզբում մարդիկ սաստիկ վիրավորվում եյին: Այսպես, օրինակ, պատահեց Լենինականի քաղխորհրդի նախագահ ընկ. Գևորգյանի հետ. բայց այն բանից հետո, երբ մենք քննեցինք նրա հարցը և մի լավ սղմեցինք ընկեր Գևորգյանին, նա իր սխալները հասկանալու և ուղղելու նշաններ է ցույց տալիս:

Վիրավորվեց նաև Երևանի Կոնյակի գործարանի դիրեկտոր ընկեր Մելիքյանը: Այս ընկերը հրաժարվեց աշխատելուց, բայց գործարանի կուսակցական կազմակերպությունը արագ նրան ուշքի բերեց:

Համ. Կ(բ)Կ Կենտկոմի վերջին Պլենումի վորոշումների և ընկեր Ստալինի ցուցումների հիման վրա, քննադատության և ինքնաքննադատության ու ներկուսակցական դեմոկրատիայի ե՛լ ավելի ծավալման շնորհիվ, աճեց կուսակցական մասսաների ակտիվությունը և վերջին ընտրությունների ժամանակ նշանակալից չափով նոր ընկերներ ընտրվեցին կուսօրգանների մեջ: Կուսկոմիտեների կազմի մեջ ընտրված 1409 հոգուց կուսակցական որգանների կազմում առաջին անգամ ընտրվել են 689 հոգի, կուսկոմիտեների նոր քարտուղարներ և նոր կուսկազմակերպիչներ են ընտրվել 203 հոգի կամ 15,1 տոկոսը:

Այժմ խնդիրն այն է, վորպեսզի լրջորեն ձեռնամուխ լինենք այդ կադրերի ուսուցմանը, կատարենք ընկեր Ստալինի և Համ. Կ(բ)Կ Կենտկոմի Պլենումի

ցուցումը՝ կուսակցական դասընթացներ կազմակերպելու մասին։

Հայաստանի Կենտկոմն արդեն սկսել է զբաղվել այդ հարցով. հարկավոր է ամեն ինչ նախապատրաստել, վորպեսզի սեպտեմբերի մեկից կուս. կոմիտեների 300 քարտուղար սկսեն սովորել այդ դասընթացներում։

Չնայած կուսօրգանների ընտրությունների այս դրական արդյունքներին, այնուամենայնիվ, առանձին սկզբնական կուսակցական կազմակերպությունների և նույնիսկ առանձին շրջկոմների կողմից թույլ են տրըվել սխալներ և ՀամԿ(բ)Կ Կենտկոմի դիրեկտիվների խախտումներ։ Կենտկոմը չեղյալ հայտարարեց Իջևանի 4 կուսակցական սկզբնական կազմակերպությունների ընտրությունները։ Կենտկոմը բեկանեց Յերևանի 2 սկզբնական կազմակերպությունների ընտրությունները։ Բացի դրանից, իրենք՝ քաղկոմներն ու շրջանային կոմիտեները բեկանել են՝ Աշտարակում — 6, Լենինականում — 7, Ալավերդում — 5, Ախտայում — 9 սկզբնական կազմակերպությունների ընտրությունները։

Առաջին շրջանում յեղել են կուսակցական ղեկավարների ինքնահեռացման դեպքեր կուսակցական մարմինների ընտրությունների ղեկավարումից։ Այս բոլոր թերությունները հետագայում վերացվեցին և Հայաստանի կուսակցական կազմակերպությունների ընտրություններն անցան Համ. Կ(բ)Կ Կենտկոմի ցուցումների համապատասխան։

Վերևում յես խոսեցի այն մասին, վոր Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմը բեկանեց Յերևանի յերկու սկզբնական կուսակցական կազմակերպությունների՝ Կոնսերվի գործարանի և Համալսարանի կազմակերպությունների ընտրությունները։



Թույլ տվեք ավելի մանրամասն կանգ առնել դրա վրա, վորովհետև հենց այդ կազմակերպությունների ընտրությունների կապակցությամբ եր, վոր լույս տեսան «Պրավդա»-ում ձեզ արդեն ծանոթ թղթակցությունները։

Ընկերնե՛ր, ինչպես ձեզ հայտնի յե, «Պրավդա»-յում վերջերս լույս տեսան մի քանի հոդվածներ, վորոնք ճշտորեն ահազանգեցին այն քաղաքական սխալների մասին, վոր թույլ է տվել Կենտկոմը վերջին շըրջանում։

Անկասկած, Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմը խոշոր աշխատանք ծավալեց տրոցկիստական-դաշնակցական-սպեցիֆիկյան տարրերի մերկացման գործում։ Մերկացվեցին հակահեղափոխական Խանջյանի հովանավորությամբ գործող հակահեղափոխական-տրոցկիստական-նացիոնալիստական-դաշնակցական- սպեցիֆիկյան տարրերը, հայ ժողովրդի վոխերիմ թշնամիները։ Ե՛լ ավելի բարձրացավ կուսակցական մասսաների բոլշևիկյան զգաստությունը։ Հայաստանի բոլշևիկների վերոհիշյալ նվաճումներն ակնհայտ են։

Սակայն, ինչպես ասել է ընկեր Ստալինը, յուրաքանչյուր նվաճում ունի իր ստվերոտ կողմը։ Մեր կուսակցական կազմակերպությունները յերբեք չըպետք է արբվեն այդ հաջողություններով և թուլացնեն իրենց պայքարը դասակարգային թշնամիների մնացորդների դեմ։

«Պրավդա»-յում լույս տեսած հոդվածներն ահազանգելով Կենտկոմի թույլ տված կոպիտ քաղաքական սխալների մասին, մոբիլիզացիայի յեն յենթարկում մեր կուսակցական կազմակերպություններին՝ վճռականորեն ուղղելու այդ սխալները և դրա հիման վրա դաստիարակելու մեր կադրերին։ «Պրավդա»-յի հոդ-

վածներն ողնում են ուղղելու Կենտկոմի ու Յերևանի Կոմիտեյի սխալները, լայնորեն ծավալելու բոլշևիկյան ինքնաքննադատությունը, ավելի աչալուրջ, ավելի անողոք ու անխնա լինելու կուսակցության ու ժողովրդի թշնամիների — տրոցկիստական - նացիոնալիստական տարրերի մերկացման ու ջախջախման գործում: Իհարկե, հոդվածներում առանձին անճշտությունների վերաբերյալ կան ակնարկություններ, կամ առանձին փաստերի մեկնաբանություններ, վորոնք կարող են վոչ ամբողջովին ճիշտ լինել, սակայն այդ չէ էյականը: Էյականն ու հիմնականն այն է, վոր «Պրավդա»-ն ճիշտ է ահազանգում մեր սխալների մասին: Վոմանք այդ հոդվածները դիտում են, վորպես ղեկավարության վարկաբեկում: Դա, ընկերնե՛ր, սխալ, հակակուսակցական տեսակետ է, այստեղ վոչ մի վարկաբեկման խնդիր չկա:

Մեզանից շատերը կարծում էյին, վոր յեթե մենք կատարել ենք խոշոր աշխատանք և տարիների ընթացքում կուտակված փտած աղբը կարողացանք համեմատաբար կարճ ժամանակամիջոցում մաքրել, ապա ուրեմն ի՞նչպես կարող է պատահել, վոր այդպիսի մեծ գործ կատարելուց հետո, մենք սխալ թույլ տանք: Յես կարծում եմ, վոր այդպես մտածելը ճիշտ չէ:

Ընկեր Ստալինը բազմիցս նախազգուշացրել է մեզ, վոր հաջողություններից գոռոզանալն ու գլխապտույտի մեջ ընկնելը բոլշևիկի հատկություն չէ: Ուրեմն մենք պետք է ավելի ու ավելի բարձրացնենք մեր բոլշևիկյան զգաստությունը, վոչ մի պարագայում թույլ չտանք բոլշևիկյան աչալրջության վորևէ թուլացում դասակարգային թշնամիների նկատմամբ:

Վորո՞նք են մեր սխալները:

Կենտկոմի հիմնական սխալը Յենգիբարյանի հար-



ցում այն է, վոր մենք շատ հեշտությամբ հավատացինք այն վերսիային, վոր իբր նա միայն 1923-24 թվականներին է տրոցկիստական տատանումներ ունեցել, իսկ այնուհետև հաստատորեն անցել է կուսակցության կողմը և պայքարել է կուսակցության գծի համար: Սակայն պարզ է, վոր յեթե մենք ավելի սուր դնեյինք նրա հարցը, ավելի զգաստ վերաբերմունք ունենայինք, գոնե առնվազն հրապարակեյինք նրա մասին մեր ընդունած վորոշումը, ճիշտ կողմնորոշում տայինք և մոբիլիզացիայի յենթարկեյինք կուսկազմակերպությունը ուշիմ և աչալուրջ լինելու, վերջնականապես պարզելու Յենգիբարյանի քաղաքական կերպարանքը, ապա, անտարակույս, այդ սխալը տեղի չէր ունենա և կուսակցական կազմակերպության ողնությամբ նա արագորեն դիմակազերծ կարվեր:

Հետագա իրադարձությունները ցույց տվին, վոր յերկերեսանի Յենգիբարյանը մեծ վարպետությամբ ու ճարպկորեն ոգտագործեց մեր սխալներն ու դանդաղումը:

Հազիվ եր վոտք դրել Պետական Համալսարանը, յերբ նրան ընտրեցին կուսակցական կոմիտեյի անդամ, իսկ մի քիչ ավելի ուշ, փետրվարին, նրան ընտրում են ռայոնական կուսկոնֆերանսի պատգամավոր և կոնֆերանսի նախագահության անդամ: Այդ փաստերին սակայն համապատասխան նշանակություն չեն տալիս վոչ կուսակցության Յերևանի Քաղաքային Կոմիտեյի քարտուղարներ՝ ընկ. ընկ. Դանիելյանն ու Ուրդուխանյանը, վոչ ել ռայկոմի քարտուղար ընկ. Արզումանյանը: Նույն Յենգիբարյանի նկատմամբ սխալ վերաբերմունքի պատճառով տեղի յեն ունենում ձեզ հայտնի սխալները Կենտկոմի ակրոզնական կուսկազմակերպությունում և Կոնսերվի գործարանի կուսկազմակերպության վերջին ընտրական ժողովում:

Այս բոլորից հետո հասկանալի չե, թե ինչպես խրախուսվելով իր նկատմամբ յեղած լիբերալ վերաբերմունքից, Յենգիբարյանը հաջողեցնում ե Պետհամալսարանի կուսկազմակերպության վերջին ընտրական ժողովում ընտրվել ժողովի նախագահ, հաշվիչ հանձնաժողովի անդամ, կուսակցական նորընտիր կոմիտեյի անդամ և ռայոնական կոնֆերանսի պատգամավոր:

Յեվ այս բոլորից հետո միայն, մեծ ուշացումով, Կենտկոմն ուղղեց իր սխալը (ապրիլի 26-ի որոշումը, որը հրապարակված եր թերթերում), ճիշտ դիրքավորում տվեց սկզբնական կուսկազմակերպությանը, որը և կարողացավ պարզել այդ խարդախ, յերկերեսանի տրոցկիստի դեմքը և վտարել նրան կուսակցության շարքերից:

Պետք ե նշել սակայն, որ Պետական Համալսարանի կուսկազմակերպության ընտրական ժողովում Յենգիբարյանի խաբեբայական մանյովրը հենց տեղն ու տեղը չմերկացնելու խնդրում խոշոր մեղք ունեն Յերևանի Կոմիտեյի քարտուղար ընկ. Ա. Որդուխանյանը, որն այդ ժողովում ունեցած իր յելույթում ճիշտ կողմնորոշում չտվեց կուսկազմակերպությանը Յենգիբարյանի նկատմամբ, և Կիրովյան ռայկոմի քարտուղար ընկ. Ա. Արզումանյանը, որը չապահովեց Պետհամալսարանի կուսկամակերպության ժողովի ղեկավարումը:

Այսպիսով Յերևանի Կոմիտեն կուսակցական օրգանների ընտրությունների ընթացքում թույլ տվեց լուրջ սխալներ և պարզ ե, որ այդ սխալները պետք ե սուր քննադատության յենթարկվեյին Յերևանի քաղաքային կուսկոնֆերանսում: Սակայն կոնֆերանսում ինքնաքննադատությունը լայն ծավալ չստացավ, ընդհակառակը, մենք այնտեղ ականատես յեղանք ինքնաքննադատության ճնշման փաստերի:



Յերևանի կուսկոնֆերանսում, օրինակ, ղեկավարությանը քննադատող մի ընկերոջ ընկ. Աղաբաբովն անվանեց թշնամու ձայնատար: Սխալ և ինքնաքննադատության դեմ ուղղված յելույթ ունեցավ և ընկ. Ա. Շաղբաթյանը: Թեպետ կոնֆերանսն ուղղեց, բայց բանն այն ե, որ այդպիսի սխալ տեղի ունեցավ կոնֆերանսում: Այս սխալը, իհարկե, պատահական չեր, այլ բխում եր նրանից, որ Յերևանի Կոմիտեյի ղեկավարները փոխանակ գլխավորելու ինքնաքննադատությունը, պաշտպանողական դիրք բռնեցին: Այդ տեսակետից, ինձ թվում ե անձամբ ընկ. Դանիելյանի սխալն այն յեղավ, որ նա Յերևանի կուսկոնֆերանսում տեղի ունեցած այդ փաստերը գնահատեց որպես մասնակի, այլ ոչ որպես քաղաքական մեծ նշանակություն ունեցող սխալներ: Այսինքն, նա ըստ եության չտվեց նրանց իսկական գնահատականը, չդրեց հարցն այնպես, ինչպես հարկավոր եր, դրանով իսկ չշտկելով այն մարդկանց, ՈՎՔԵՐ ՉԵՆ ՀԱՄԿԱՑԵԼ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՅԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՎՈՐՈՇՈՒՄՆԵՐԻ, ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԻ ՑՈՒՑՈՒՄՆԵՐԻ ՎՈԳԻՆ:

Ակնհայտ ե, ընկերնե՛ր, որ Յերևանի կուսկազմակերպության մեջ յերկար տարիներ զարգացվել ե այն մտայնությունը, թե ղեկավարությանը քննադատել չի կարելի, որ քննադատել, նշանակում ե վարկաբեկել ղեկավարությունը: Դա սխալ ե և անընդունելի: Ընդհակառակը, բոլշևիկյան քննադատությունը դա իսկական օգնություն ե ղեկավարությանը:

Կոնֆերանսում թույլ տված սխալներից Յերևանի կազմակերպությունը պետք ե համապատասխան հետևություններ անի: Դրանից հետևություններ պետք ե անի և մեր համագումարը: Նա պետք ե բոլշևիկյան ինքնաքննադատության օրինակ տա Հայաստա-

նի Կ(բ)Կ բոլոր կազմակերպություններին, նա պետք է ցույց տա, թե ինչպես կարելի յե և անհրաժեշտ է ամենաարագ զենքավարությունն եվ ամենասուր քննադատության յենթարկել՝ նրան ոչնչելու նպատակով:

Յես համոզված եմ, վոր Յերևանի Կոմիտեն և Յերևանի ռայոնական կուսկոմիտեները, այս բոլորից անհրաժեշտ յեզրակացություններ կանեն և մարտականորեն կձեռնարկեն Համ. Կ(բ)Կ ԿԿ-ի Մարտյան Պլենումի վորոշումների և ընկեր Ստալինի ցուցումների կենսագործմանը:

Հայաստանի կուսակցական կազմակերպությունները հատկապես վերջին ընտրությունների ընթացքում աշխատանքի մեծ փորձ են կուտակել և այդ փորձը պետք է լիովին օգտագործվի, վորպեսզի ավելի լավ ապահովենք Խորհուրդների ընտրությունների նախապատրաստումը: Յելնելով կուսօրգանների ընտրության մեր փորձից, Խորհուրդների առաջիկա ընտրությունները պետք է նախապատրաստել այնպես, վորպեսզի վոչ մի սխալ թույլ չտանք, վորպեսզի մեր թշնամիները չկարողանան օգտագործել մեր թերությունները՝ խորհրդային իշխանության օրգանների մեջ խցկվելու համար:

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԱ

Մեր կուսակցության անդամներին մարքսիզմ-լենինիզմի վոգով դաստիարակելու գործը մեր հիմնական հարցերից մեկն է:

Համ. Կ(բ)Կ 17-րդ համագումարում ընկեր Ստալինը ծավալելով կուսակցության գաղափարական-քաղաքական աշխատանքների ծրագիրը, ասաց.

«1. Պատշաճ բարձրության հասցնել կուսակցության տեսական մակարդակը:



2. Ուժեղացնել իդեոլոգիական աշխատանքը կուսակցության բոլոր օղակներում:

3. Լենինիզմի անդադրում պրոպագանդ մղել կուսակցության շարքերում:

4. Կուսկազմակերպությունները և նրանց շրջապատող անկուսակցական ակտիվը դաստիարակել լենինյան ինտերնացիոնալիզմի վոգով:

5. Չկոծկել, այլ համարձակ կերպով քննադատել ընկերներից վոմանց շեղումները մարքսիզմ-լենինիզմից:

6. Սիստեմատիկաբար մերկացնել լենինիզմի թշնամի հոսանքների իդեոլոգիան ու նրա մնացորդները»:

Ընկեր Ստալինի ցուցումների հիման վրա մշակված կուսակցական պրոպագանդայի մոտակա խնդիրների մասին Համ. Կ(բ)Կ Կենտկոմի հայտնի վորոշումից հետո կուսակցության անդամների քաղաքական դաստիարակության բնագավառում վորոշ աշխուժացում տեղի ունեցավ:

Սեզոնականությունը հիմնականում լիկվիդացիայի յենթարկվեց, կուսակցական կոմիտեներն ընդհուպ մոտեցան կուսակցական պրոպագանդի գործին, սկսեցին լրջորեն զբաղվել կուսակցական պրոպագանդայի ղեկավարման, թերությունների վերացման գործով: Շրջկոմներն սկսեցին զբաղվել պրոպագանդիստական կադրերի ընտրությամբ:

Ներկայումս Հայաստանում մենք ունենք 1.073 պրոպագանդիստ, վորոնք հաստատված են շրջանային ու քաղաքային կոմիտեների կողմից:

1936 թվականի ընթացքում պրոպագանդիստների վերապատրաստման դասընթացներից անցել են 304 հոգի, վորը կազմում է պրոպագանդիստական կադրերի 28 տոկոսը, բացի այդ, վերապատրաստման դա-

ընթացներով անցել են նաև 21 կաբինետի վարիչներ։

Սակայն, պետք է խոստովանել, որ կուսակցական պրոպագանդան մեզ մոտ, Հայաստանում, դեռևս վատ է կազմակերպված, ինչպես կուսակցության անդամների ընդգրկման, այնպես էլ աշխատանքների բոլշևիկյան բովանդակության, նրա որակի տեսակետից։

Կուսակցական կազմակերպությունները չեն զբաղվել կուսակցական դպրոցների կոմպլեկտավորմամբ, հաճախ ինքնահոսի մատնելով այդ գործը։

Կուսակցության անդամները տարիներով նստել են միևնույն խմբակում։ Բոլոր շրջանային կոմիտեները չեն, որ լուրջ կերպով են մոտեցել պրոպագանդիստական կադրերի ընտրությանը։ Պրոպագանդիստը պատվավոր դեմք չի համարվել։ Կուսակցական փաստաթղթերի ստուգումից ու փոխանակումից հետո և հատկապես Խանջյանի պրովոկացիոն ինքնասպանությունից հետո մի քանի շրջանների (Ամասիա, Լենինական, Կիրովական, Միկոյան) պրոպագանդիստների շարքերում հայտնաբերվեցին տրոցկիստական տարրեր, որոնք տեղական կազմակերպությունների անհոգության հետևանքով կարողացել էին երկար ժամանակ կուսակցական պրոպագանդիստի բարձր կոչմանն արժանանալ։

Հասկանալի յե, որ կուսակցական լուսավորության այդպիսի վիճակը չէր կարող ապահովել կուսակցական կազմակերպության բոլշևիկյան մարտունակությունը, զգաստությունը, մոբիլիզացիայի յենթարկելու նրան։ Ժողովրդի թշնամիներին՝ անարգ երկերեսանի հակահեղափոխականներին հայտաբերելու և մերկացնելու համար խոշոր անելիքներ են դրված մեր առաջ պրոպագանդայի ասպարեզում։

Ամենամոտիկ ժամանակում մենք պետք է կազմա-



կերպենք պրոպագանդիստների ու կուսակցական կաբինետների վարիչների, կուլտպրոպբաժինների վարիչների, թերթերի խմբագիրների, ինչպես արտադրությունից կտրված, այնպես և առանց արտադրությունից կտրվելու, դասընթացներ, այլապես մենք չենք կարողանա իրականացնել առաջնորդի տված բոլշևիզմին տիրապետելու լոզունգը։

Պետք է նշել, որ մեր պրոպագանդիստների պատրաստականությունն այնքան էլ բարձր չէ։

Մինչև իսկ մեր պատասխանատու հանրապետական աշխատողներն ինքնակրթությամբ քիչ են զբաղվում։ Նրանց տեսական մակարդակը բացահայտորեն անբավարար է։ Հարկավոր է վերջ դնել այն հակաբոլշևիկյան շաղակրատությանը, ըստ որի իբր թե կարող է լինել լավ, պրակտիկ աշխատող՝ առանց տեսական գիտելիքների։

Մեր բոլոր պատասխանատու աշխատողներին մենք պետք է լայնորեն ընդգրկենք մեր ուսուցման ցանցի մեջ, նրանց պետք է ստիպենք պրոպագանդիստական աշխատանք կատարելու և, որ գլխավորն է, կազմակերպենք նրանց ինքնակրթության գործի վերահսկողությունը։

Շատ շրջաններում մենք շրջանային կուսակցական ակտիվի համար կիրառել ենք տեսական կոնֆերանսներ հրավիրելու պրակտիկան։ Այդ վատ փորձ չէ և անհրաժեշտ է այն լայնորեն ծավալել։

Մեր կուսակցական կազմակերպությունները կուսակցական լուսավորության խմբակների կոմպլեկտավորումն այնպես պետք է կատարեն, որպեսզի ճիշտ կերպով հաշվի առնվեն կոմունիստների գիտելիքների մակարդակը և նրանց պահանջները։ Կոմունիստների աշխատանքի համար պետք է ստեղծել անհրաժեշտ

պայմաններ (չենք, ուսումնական պիտույքներ, դասագրքեր և այլն):

Պետք է նշել միաժամանակ, վոր կուսակցական կոմիտեները դեռևս անբավարար չափով են ղեկավարում կուսակցական խմբակների գործունեությունը, ուսուցման ծրագրերը չեն կատարվում և ծրագիրն ավարտած խմբակների աշխատանքները չեն ստուգվում, դեռևս անբավարար է կենսագործվում Համ. Կ(բ)Կ Կենտկոմի վորոշումը՝ խմբակներում կուսակցության քաղաքականության և միջազգային դրության վերաբերյալ ինֆորմացիա, զրույցներ կազմակերպելու մասին: Այս թերությունները պետք է իսպառ վերացնել:

Կուսակցական պրոպագանդան պետք է կազմակերպել այնպես, վորպեսզի նա լինի հրապուրիչ, դյուրըմբռնելի, բովանդակալից և հագեցված լինի բարձր գաղափարականությամբ, բոլշևիկյան սկզբունքայնությամբ:

Կուսակցական պրոպագանդայի ասպարեզում յեղած թերությունները, նրա վատ դրվածքը, վկայում են այն մասին, վոր մեր կուսակցական կազմակերպությունները և նրանց ղեկավարները դեռևս բավարար չափով չեն գիտակցել այդ գործի ամբողջ կարևորությունը:

Բոլշևիզմի պրոպագանդան հեշտ գործ չէ: Նա պահանջում է մեծ գիտելիքներ, լավ ընդունակություններ և, վոր գլխավորն է, պետք է սիրել պրոպագանդիստական աշխատանքը: Պետք է վերջ տալ պրոպագանդիստների թեթևամիտ ընտրությանը. պատշաճ բարձրության վրա դնել հատկապես կուսպատմության ուսումնասիրության գործը, ընկեր Ստալինի՝ Համ. Կ(բ)Կ պատմության դասագրքի կազմողներին տված ցուցումների հիման վրա: Մեր կու-



սակցական պրոպագանդայի գործն այնպես պետք է դնել, վորպեսզի անշեղ կերպով կատարվեն Համ. Կ(բ)Կ Կենտկոմի Մարտյան Պլենումի վորոշումները, վորոնք պահանջում են՝ «մեր կուսակցության քաղաքական աշխատանքը հասցնել պատշաճ բարձրության, վորպես անկյունաքար դնելով կուսակցական, խորհրդային ու տնտեսական կադրերի քաղաքական լուսավորության ու բոլշևիկյան կոփվածության խնդիրը»:

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱԳԻՏԱՑԻԱ

ՀամԿ(բ)Կ Կենտկոմի 1935 թվականի դեկտեմբերի 4-ի վորոշումն ագիտացիայի դրության մասին Բալախնայի կոմբինատում, ամբողջովին վերաբերում է նաև Հայաստանի Կոմունիստական Կուսակցության կազմակերպությանը:

Ագիտ-մասսայական աշխատանքի դրության ըստուգումը 15 շրջաններում ցույց տվեց, վոր բացի մի քանի կազմակերպություններից (Լենինական, Ն. Բայազետ, Յերևանի Ստալինյան ռայոն) մնացած շրջաններում ամենօրյա քաղաքական-մասսայական աշխատանքը սիստեմատիկ կերպով չի կատարվել: Ագիտացիայի դրվածքի ամենահիմնական թերությունն այն է յեղել, վոր շրջկոմները և սկզբնական կուսկազմակերպությունները չեն ունեցել ընտրված և հաստատված ագիտատորների կադրեր, յեթե զրուցավարներ և ընթերցողներ ունեցել են, ապա նրանց հետ աշխատանք չի կատարվել:

Ագիտացիայի վերաբերյալ հանրապետական խորհրդակցության հրավիրելուց, ՀԿ(բ)Կ Կենտկոմի Բյուրոյի հատուկ վորոշումն ընդունելուց և մասնավորապես կուսփաստաթղթերի փոխանակումից հետո, քաղաքական ագիտացիայի մեջ բեկում ստեղծվեց:

Սկզբնական կուսկազմակերպությունները և շրջկոմներն արդեն զբաղվում են ագիտացիայի հարցերով, ընտրում և հաստատում են ագիտատորներին, զրուցավարներին և ընթերցողներին։

Սակայն այդ սկզբնական թեկումը մեզ բավարարել չի կարող։ Անհրաժեշտ է ստուգել ագիտատորների կադրերը և ագիտացիոն աշխատանքին մասնակից դարձնել բոլոր կոմունիստներին, ազնիվ, սոցիալիզմի գործին նվիրված բանվորներին, կոլտնտեսականներին և խորհրդային ինտելիգենտներին՝ քաղաքական — ագիտացիոն աշխատանքը ե՛լ ավելի լավ հիմքերի վրա դնելու համար։

Այդ նպատակին հասնելու համար՝

1. Հարկավոր է չափազանց լուրջ աշխատանք կատարել տեղական կադրերի ստեղծման, ամրացման ու դաստիարակման ուղղությամբ։ Այդ գործով պետք է զբաղվեն առաջին հերթին շրջկոմների քարտուղարները, կազմակերպելով ագիտ-կոլեկտիվների սիստեմատիկ ու պլանային աշխատանքը։

2. Հարկավոր է կուսակցական կազմակերպությունների պրակտիկայից արմատախիլ անել ագիտացիոն աշխատանքի նկատմամբ յեղած ձևական վերաբերմունքը։ Վերջ տալ այն պրակտիկային, յերբ անհապաղ պատասխան պահանջող հարցերը տասնյակ օրերով թթու յեն դրվում, պարզաբանման համար, բոլշևիկյան աշխատանքը փոխարինվում է ճոճուն բառերով, ճառերով ու վարչարարությամբ, քաղաքական ագիտացիան փոխարինվում է լրագրերի սոսկ ընթերցանությամբ, իսկ հասունացող հարցերի բացատրությունները հետ են մնում դեպքերի ընթացքից։

3. Հարկավոր է վերջ դնել հակակրոնական աշխատանքի թերագնահատմանը։ Փորձը ցույց է տալիս, որ յերբ այդ աշխատանքը թուլանում է, աշխուժա-



նում են տերտերները և զանազան յեկեղեցական ծեսերի ու կրոնական տոնակատարությունների միջոցով հակախորհրդային աշխատանք են կատարում։

Մենք չպետք է մոռանանք, որ մեր յերկրում գոյություն ունի Եջմիածինը, որը սոսկ իր գոյությամբ մեծ չափով նպաստում է կրոնական աշխատանքների աշխուժացմանը, այն պայմաններում, յերբ կրոնի դեմ մղվող պրոպագանդան և ագիտացիան թուլանում են։

4. Հարկավոր է, որ կուսակցության շրջանային կոմիտեները վերջ դնեն քաղմասսայական աշխատանքների թերագնահատմանը (Վեդի, Իջևան, Թալին, Դիլիջան և այլն), հարկավոր է հատուկ ուշադրություն նվիրել ազգային փոքրամասնությունների մեջ կատարվող քաղաքական-ագիտացիոն աշխատանքին։

5. Հարկավոր է ԽՍՀՄ-ի միջազգային ու ներքին դրության հարցերի շուրջը սիստեմատիկ ագիտացիոն աշխատանք կատարել, վերականգնել միտինգների, ցույցերի պրակտիկան և այլն։

Պետք է հիշել, որ ագիտացիոն աշխատանքը հատկապես ներկա էտապում ունի մեծ նշանակություն. պետք է կարողանալ օգտվել բոլշևիկյան այդ հատու զենքից։

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԸ

Կուսակցական պրոպագանդի ու ագիտացիայի բնագավառում մեծ դեր է խաղում մամուլը։ Հայաստանում հրատարակվում են 50 թերթ՝ 224.000 օրինակ տիրաժով։ Հայերեն լեզվով՝ 43 թերթ, ռուսերեն լեզվով՝ 2, ադրբեջաներեն 4, քրդերեն՝ մեկ։

Հրատարակվում են 7 ամսագիր։ Մեր հրատարակչությունները 1936 թվին հրատարակել են 520 ա-

նուն գիրք, 5.197.600 օրինակ տիրաժով։

1937 թվականին, պլանի համաձայն, նախատեսված է հրատարակել 676 անուն գիրք, 6.490.000 օրինակ տիրաժով։ 1934-36 թ. թ. ընթացքում մեր հրատարակչությունները հրատարակել են Մարքսի, Էնգելսի, Լենինի, Ստալինի աշխատություններից 60 անուն՝ 699.000 օրինակ տիրաժով։ Կուսակցական դասագրքեր և այլ կուսակցական գրականության 173 անուն՝ 1.648.900 օրինակ տիրաժով։

Բայց անբավարար է կուսակցական մամուլի վիճակը։

Հազվագյուտ չեն այնպիսի փաստեր, երբ մեր դասակարգային հակառակորդները օգտվելով մամուլում աշխատող կոմունիստների անհոգությունից, թերթերում զետեղում են այնպիսի նյութեր, որոնք անթույլատրելի են։

Մեր թերթերը շատ հաճախ չեն կարողանում խուսափել անհեթեթ ծայրահեղություններից։ Նրանք մերթ միանգամայն անատամ են դառնում, մերթ քննադատության ժամանակ կորցնում են չափի զգացումը և նույնիսկ դադարում են փաստերը հաշվի առնելուց։ Այս բոլորը տեղի է ունենում այն պատճառով, որ մեր մամուլը, հրատարակչական գործը, մինչև այժմ էլ դեռ ապահովված չէ կուսակցական ամուր կադրերով և Համ. Կ(բ)Կ Կենտկոմի Մարտյան Պլենումի ցուցումները մամուլի մասին մենք դեռ չենք կատարել։ Կուսակցության ղեկավար աշխատողները, Կենտկոմի քարտուղարները, Բյուրոյի անդամները, Շրջկոմի քարտուղարները պետք է զբաղվեն կուսակցական մամուլով և այդ բանը համարեն իրենց ուղղակի պարտականությունը։



## ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՄՅԵՐԻՏՄԻՈՒԹՅՈՒՆԸ

Հաշվետու ժամանակաշրջանում Հայաստանի կոմյերիտմիությունն զգալի աճ է ունեցել, դարձել է բազմահազար մի բանակ, որն ակտիվ մասնակցություն ունի Հայաստանի սոցիալիստական շինարարության բոլոր ճակատամասերում։

Կոմյերիտականներն առաջավոր մարտիկ են հանդիսանում ոչ միայն ուսման ասպարեզում, այլև սոցիալիստական շինարարության բոլոր բնագավառներում։

Կոմյերիտմիությունը կուսակցության մարտական ու հավատարիմ օգնականն է, անսահմանորեն նվիրված կուսակցության գործին և աշխատավոր մարդկության առաջնորդ ընկեր Ստալինին։

Հայաստանի կոմյերիտմիությունն ունի 51.000 անդամ։ Հաշվետու շրջանում նա տվել է ավելի քան 100 օդաչու, մոտ 500 պարաշյուտիստ, ստախանովյան շարժման տասնյակ ու հարյուրավոր նախաձեռնողներ, 200 գիտական աշխատող և ավելի քան 2000 ինժեներ, բժիշկ և այլն։ Ընկեր Ստալինի ցուցումների և ՀամԿ(բ)Կ Կենտկոմի որոշումների հիման վրա, Հայաստանի կոմյերիտմիությունը վերակառուցում է իր դաստիարակչական աշխատանքները, այն ուժեղացնելու, երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործը լավ հիմքերի վրա դնելու ուղղությամբ։

Կոմյերիտմիության աշխատանքում շատ թերություններ ու բացեր կան։ Այն թերությունները, որոնք երևան են հանված ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Պլենումի կողմից կուսակցական կազմակերպությունների

աշխատանքի տապալիչում, հատուկ են ավելի մեծ չափերով մեր կոմյերիտմիությանը:

Կոմյերիտական կազմակերպությունները և առաջին հերթին ՀԼԿՑԵՄ Կենտկոմը, քաղաքային կոմիտեները և շրջանային կոմիտեները, պետք է վերջ դնեն քաղաքական-դաստիարակչական աշխատանքի թերագնահատման պրակտիկային, շեշտակի պայքար մղելով վարչարարական, կոմյերիտականների մասսաներից կտրված լինելու փաստերի դեմ և այլն: Անհրաժեշտ է կոմյերիտմիության բոլոր կազմակերպությունների աշխատանքները վերակառուցել ինքնաքննադատության լիակատար ծավալման նշանաբանով:

Հայաստանի կուսակցական կազմակերպությունները պետք է բարելավեն կոմյերիտմիության վերաբերմամբ իրենց ունեցած ղեկավարությունը, կոնկրետ կերպով զբաղվեն կոմյերիտական հարցերով և առաջիկա ընտրությունների ժամանակ օգնեն կոմյերիտական կազմակերպություններին:

## ՄԵՐ ԱՌԱՋԻԿԱ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Կուսակցական փաստաթղթերի ստուգման և փոխանակման ընթացքում Հայաստանի կուսկազմակերպությունները և Ներքգործժողկոմատի մարմինները դեռ անցյալ տարվա մայիս—հունիս ամիսներին սկսեցին մերկացնել ժողովրդի ամենավոխերիմ թշնամիներին՝ տրոցկիստներին, նացիոնալիստներին, վորոնք հովանավորվում և պաշտպանվում եյին սպեցիֆիզմ-տրոցկիզմի վիժվածք Խանջյանի կողմից:

Խանջյանի դավաճանական ինքնասպանությունից հետո, Խանջյանի, վորի իսկական հակահեղափոխական նացիոնալիստական դեմքը մերկացված է, յերեվան հանվեցին և մերկացվեցին կուսակցության չար-



ջերը սողոսկած զգալի թվով տրոցկիստներ, նացիոնալիստներ, յերկերեսանիներ, վնասարարներ և մեր կուսակցության ու ժողովրդի այլ վոխերիմ թշնամիներ: Հազիվ թե հարկ լինի կանգ առնելու իր՝ Խանջյանի— մեր կուսակցության և ժողովրդի այդ թշնամու վրա, վորը մեր սոցիալիստական հայրենիքի դեմ պայքարելու հարցում համաձայնության եր յեկել դաշնակների ու ռամկավարների հետ: Այդ մասին շատ է խոսվել Հայաստանի կուսակցական կազմակերպություններում: Խանջյանի մերկացումն օգնեց Հայաստանի կուսկազմակերպություններին բոլշևիկյան զգաստության բարձրացման հիման վրա յերեվան բերելու Ն. Ստեփանյանի, Դ. Սիմոնյանի, Ա. Բակունցի և ուրիշների տրոցկիստական – նացիոնալիստական տեռորիստական կենտրոնը, վորոնք Խանջյանի աջակցությամբ վոչ միայն զբաղվում եյին վնասարարությամբ՝ գրականության ու արվեստի բնագավառում, այլև տեռորիստական(ակտեր եյին նախապատրաստում կուսակցության և կառավարության ղեկավարների դեմ: Այդ կենտրոնը հատկապես իր թշնամանքն եր տարածում Անդրկովկասի ժողովուրդների բարեկամության և մեր կուսակցության ղեկավարության դեմ:

Մերկացվեց նաև Հայաստանի հակահեղափոխական նացիոնալիստական– տրոցկիստական կենտրոնը, վորի անդամներն եյին բոլորին հայտնի անձնավորություններ՝ Ս. Յերզնկյանը, Ա. Յեսայանը, Ս. Փիրումովը, Պ. Մակինցյանը և ուրիշները: Մերկացվեց և ձերբակալվեց Գ. Շահվերդյանը, այդ դավաճանն ու մեր ժողովրդի թշնամին, վորը ինչպես հաստատել է քննությունը, կապված է յեղել թե՛ դաշնակների, և թե՛ օտար պետությունների հետախուզական օրգանների հետ: Շահվերդյան Դանուշը լրտես է, մեր հայրենիքի դավաճանը:

Վերջին օրերս էլ մերկացվեց հակահեղափոխական- տրոցկիստ Ս. Վարդանյանի և Թոդենցվեյգի հետ կապված Ա. Շահվերդովը: Հայկական հակահեղափոխական տրոցկիստական- նացիոնալիստական կենտրոնը կապված էր մի կողմից, վրացական նույնանման կենտրոնի, իսկ մյուս կողմից էլ դաշնակների հետ արտասահմանում, և աշխատում էր նրանց անմիջական դիրեկտիվներով:

Հիշյալ բոլոր անձերն էլ իրենց ցուցմունքներում խոստովանել են իրենց հակահեղափոխական գործունեության մասին: Հաստատված է, վոր այդ գազանները, միանալով դաշնակների հետ, յերկար տարիներ վնասել են Հայաստանի սոցիալիստական շինարարությանը:

Հենվելով դաշնակներին, հույս դնելով Խորհրդային Միության պարտության վրա ապագա պատերազմում, այդ սոր թշնամիներն անում էյին ամեն բան, վորպեսզի թուլացնեյին, խարխլեյին մեր հայրենիքի հզորությունը: Նրանք հույս ունեյին անջատել Հայաստանն Անդրկովկասից և ամբողջ Խորհրդային Միությունից և հակախորհրդային ուժերի օգնությամբ ստեղծել «անկախ» հայկական պետություն՝ վորպես կապիտալիստական յերկրի հովանավորության տակ: Այդ յերիցս անարգ դավաճաններն ու մարդասպաններն ամեն բան անում էյին՝ վերածնված հայ ժողովրդին նորից արյունահեղ աղետների մեջ, այս անգամ՝ ֆաշիզմի լծի տակ գցելու համար:

Մեր կուսակցությունն արմատախիլ արեց այդ սրիկաների վոհմակը, վորն իր արժանի պատիժը կկրի մեր ժողովրդի դատարանի առաջ: Բայց, սխալ կլիներ կարծել, վոր հենց դրանով Հայաստանի կոմկուսակցությունն արդեն լուծել է հակահեղափոխական տրոցկիզմի և նացիոնալիզմի դեմ մղվող պայքարի



բոլոր խնդիրները: Թաքնված թշնամիներ կան դեռ շատ տեղերում և նրանց գործերն ու դեմքերը դեռ չեն բացված մեր կուսակցական կազմակերպությունների կողմից: Մենք դեռ վերջին լիկվիդացիայի չենք յենթարկել նաև այն վնասարարության հետևանքները, վորոնք դեռ մնացել են այդ բանդիտների սոր աշխատանքների հետևանքով:

Յեթե այդ հակահեղափոխականները յերկար ժամանակ կարողացել են անպատիժ գործել, դրա պատճառն այն է, վոր մեր կուսակցական, խորհրդային և տնտեսական կազմակերպությունները և ամենից առաջ նրանց ղեկավարները բավականաչափ քաղաքական հեռատեսություն և զգաստություն չեն ունեցել: Չե՞ վոր մենք հենց այժմ էլ քիչ պատասխանատու աշխատողներ չունենք, վորոնք ժամանակին մոտիկ հարաբերության մեջ են յեղել ներկայումս մերկացված թշնամիների հետ: Չե՞ վոր յեթե այդ ընկերներն ավելի զգաստ լինեյին, ապա ժողովրդի այդ թշնամիներն ավելի շուտ կհայտաբերվեյին և նրանք չեյին կարողանա մեզ մեծ վնասներ հասցնել:

Սակայն այդ մարդիկ վոչ միայն այդ չարին, այլ այն ժամանակ, յերբ կուսակցությունն այդ հակահեղափոխականներին սկսեց մերկացնել, հիշյալ ընկերներն աշխատեցին մի կողմ քաշվել և դիտողների դերը բռնել: Այդ ընկերները պետք է այս բոլորից լուրջ դաս առնեն, վորպեսզի գոնե հետագայում այդպիսի անախորժ դրության մեջ չընկնեն:

Ինչ վերաբերում է այնպիսի մարդկանց, ինչպիսին են Ս. Մարտիկյանը, Թ. Գաչտոյանը, Ռ. Դուրգարյանը, ապա նրանցից ուղղակի պետք է հաշիվ պահանջել, վորպես այժմ մերկացված թշնամիների աջակիցների, վորովհետև նախ՝ նրանք այդ մարդկանց մտերիմ բարեկամներ են, յերկրորդ՝ մի տեսակ կասկածելի լռություն են պահպանում, չեն խոսում, իսկ յեթե

յերբեմն էլ կուսակցական ժողովներում հանդես են գալիս, իրենց անկեղծ չեն պահում և չեն պատմում ներկայումս ձերբակալված յերկերեսանիների հետ ունեցած իրենց կապերի ու հարաբերությունների մասին:

Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի Բյուրոյի վորոշմամբ Մարտիկյանը, Դաշտոյանը, Դուրգարյանը հանված են պատասխանատու աշխատանքից և նրանց վերաբերյալ նյութերը հանձնված են Կուսկոլեգիային:

Սրանք են փաստերը:

Այս բոլորից մենք պետք է հետևություններ անենք:

Առաջին, Հայաստանի Կոմունիստական Կուսակցությունը մերկացրեց տրոցկիստական-նացիոնալիստական-դաշնակցական թշնամիներին: Բայց վոչ վոք չպետք է կարծի, վոր դրանով ամեն ինչ վերջացած է: Այս գարշելիությունից դեռ քիչ բան չի մնացել և հարկավոր է բացահայտել նրանց ու մինչև վերջ լիկվիդացիայի յենթարկել:

Յերկրորդ, անհրաժեշտ է, վոր մենք արմատից պոկենք ու վոչնչացնենք հակահեղափոխական նացիոնալիզմի – սպեցիֆիզմի – դաշնակիզմի նկատմամբ տեղ-տեղ դեռ գոյություն ունեցող հաշտվողականությունը, վորը տարիների ընթացքում պատվաստում էր սրիկա Խանջյանը՝ կուսակցության պայքարը թշնամիների դեմ թուլացնելու համար: Անհրաժեշտ է նույնպես ամենակատաղի պայքար մղել ստորաքարշության, հաճոյակատարության և նման յերևույթների դեմ, վորոնք ոգնում են թշնամուն ավելի նուրբ ձևերով քողարկվել և վնասել մեր գործին: Անհրաժեշտ է յերևան բերել և մինչև վերջը մերկացնել Խանջյանի արբանյակներին, վորոնք փորձում են հարմարվել նոր պայմաններին, վորպեսզի գաղտագողի վնասեն մեզ:



Անհրաժեշտ է, վոր մենք հաստատապես հիշենք և յերբեք չմոռանանք, վոր Հայաստանի բոլշևիկներն աճել են նախ և առաջ հայկական հակահեղափոխական նացիոնալիզմի, տրոցկիզմի, նրա այլակերպության՝ լոմինաձեյականության, բուխարինյան-ռիկովյան ռեստավրատորների ու սպեցիֆիկների դեմ մղվող պայքարում:

Չպետք է մոռանալ հայկական սպեցիֆիզմի դեմ մղվող պայքարի խոշոր նշանակությունը և այն հանգամանքը, վոր մինչև այսոր էլ փորձեր են կատարվում կեղծելու ու ֆալսիֆիկացիայի յենթարկելու միջոցով սպեցիֆիզմը հանդես բերել իբրև բոլշևիզմի ակունք, իսկ նրա կողմնակիցներին՝ իբրև հայկական կոմունիստական կուսակցության հիմնադիրներ:

Հարկավոր է հիշել և չմոռանալ, վոր Խանջյանն սպեցիֆիզմի մշակվածքն էր, ուստի պետք է մինչև վերջը մերկացնել բոլոր նրանց, ովքեր թերագնահատում են սպեցիֆիզմի դեմ մղվող պայքարը, չմոռանալով, վոր սպեցիֆիզմը կուսակցության և մեր հեղափոխության հիմնական հարցերում սկզբից էլ միևնույն հակահեղափոխական-տրոցկիստական տեսակետների վրա յե կանգնած յեղել:

Յերրորդ, անհրաժեշտ է, վոր մենք ծավալենք Հայաստանի կուսկազմակերպության աշխատանքը գրականության, արվեստի և ամբողջ ազգային կուլտուրական շինարարության բնագավառում և ե՛լ ավելի մեծ թափ տանք այդ աշխատանքներին:

Չպետք է մոռանալ, վոր այդ բնագավառը դուրս յեկավ ամենից ավելի վարակված, ուստի վնասարարության հետևանքների վերացումն այդ ճակատում Հայաստանի բոլշևիկների գլխավոր պարտականություններից մեկն է:

Չորրորդ, անհրաժեշտ է գործն այնպես կազմակերպել, վոր Յերևանի կազմակերպությունը հասցնենք Միության առաջավոր կազմակերպությունների

շարքը, վորպեսզի նա իսկապես առաջատար դեր խաղա Հայաստանի կուսակցական կազմակերպության մեջ, Հայաստանի կոմունիստների առջև կանգնած բոլոր խնդիրների լուծման գործում:

Հինգերորդ, անհրաժեշտ է, վոր մեր բոլոր խորհրդային, տնտեսական, կուսակցական կազմակերպությունները և նրանց ղեկավարներն այնպես կազմակերպեն աշխատանքը, վոր վերացվեն վնասարարության հետևանքները և ամենամոտիկ ժամանակում նոր, բարձր աստիճանի վրա դրվեն մեր բոլոր խորհրդային, տնտեսական ու կուսակցական կազմակերպությունների աշխատանքները: Թող վոչ վոք ել չհանգստանա նրանով, թե իր աշխատանքի բնագավառում վնասարարություն չի յեղել:

Վեցերորդ, կուսակցական, խորհրդային, տնտեսական կազմակերպությունների ղեկավարները պետք է վճռականորեն բարելավեն կադրերի ընտրության ու դասավորման գործը, այդ աշխատանքը չվերավստահեն վոչ վոքի, անձամբ ճանաչեն, ստուգեն ու ղեկավարեն յուրաքանչյուրի աշխատանքը և օգնեն նրանց:

Յոթերորդ, ե՛լ ավելի ծավալելով մեր թերությունների քննադատությունն ու ինքնաքննադատությունը, խորհրդային ու տնտեսական կազմակերպությունների ղեկավարները պետք է ամեն կերպ ուժեղացնեն իրենց կապն ինչպես կուսակցական մասսայի, այնպես էլ անկուսակցական բանվորների, կոլտնտեսականների, աշխատավոր ինտելիգենցիայի լայն մասսաների հետ: Վոչ թե խոսքով, այլ գործով մեր աշխատողները պետք է լավ իմանան, թե ինչո՞վ է ապրում մասսան, սովորեն նրանից և սովորեցնեն նրանց:

Միշտ պետք է հիշել և չմոռանալ Անթեյի պատմությունը, վորի մասին խոսեց ընկեր Ստալինը Համ.



Կ(բ)Կ Կենտկոմի Մարտյան Պլենումում:

Ութերորդ, յերբեք չմոռանալ, վոր Հայաստանում դեռ կան ջախջախված հակախորհրդային կուսակցությունների մնացորդներ, մասնավորապես դաշնակցության մնացորդները: Չպետք է մոռանալ, վոր հակահեղափոխական նացիոնալիստների, տրոցկիստների աշխատանքն աշխուժացրեց դաշնակցական թափթփուկների գործունեությունը, ակտիվացրեց նրանց: Պետք է արթուն հսկել և անողոքաբար վոչնչացնել յուրաքանչյուրին՝ ով կփորձի բարձրացնել գլուխ:

Իններորդ, հարկավոր է մոբիլիզացիայի յենթարկել Հայաստանի բոլշևիկների ամբողջ յեռանդը՝ իրագործելու համար այն հիմնական խնդիրները, վոր դրեց ընկեր Ստալինը Մարտյան Պլենումում — տիրապետել բոլշևիզմին, կազմակերպել կադրերի քաղաքական դաստիարակության գործը, վերջ տալ քաղաքական դյուրահավատության ու անհոգության. չմոռանալ առաջնորդի այն ցուցումը, թե «հեղափոխական զգաստությունը հենց այն հատկությունն է, վորը հատկապես անհրաժեշտ է այժմ բոլշևիկներին»:

Ընկերներ, Հայաստանի՝ Կոմունիստական (բոլշևիկների) կուսակցությունը, վորն ստեղծել ու դաստիարակել է մեծ առաջնորդ ընկեր Ստալինը, վորն ընկեր Ստալինի անմիջական ղեկավարությամբ անցել է հակահեղափոխական սպեցիֆիզմի, դաշնակիզմի, տրոցկիզմի դեմ մղած պայքարի հաղթական դպրոցը, — դարձել է հզոր Համ. Կ(բ)Կ մարտական ջոկատներից մեկը: (Բուռն ծափահարություններ):

Հայաստանի բոլշևիկները մեծ Ստալինի անմիջական և ուղղակի ղեկավարությամբ բարձրացրին հեղափոխության դրոշը և մեծ ռուս պրոլետարիատի օգնությամբ խորհրդային իշխանություն ստեղծեցին Հայաստանում, հայ ժողովրդին փրկելով կործանու-

շուրջը, փորձելով նա խախտել առաջատար դեր խաղալ Հայաստանի կուսակցական կազմակերպության մեջ, Հայաստանի կոմունիստների առջև կանգնած բոլոր խնդիրների լուծման գործում:

Հինգերորդ ...

մից ու ոչնչացումից: (Բուռն ծափահարություններ):

Խորհրդային իշխանության բոլոր նվաճումները Հայաստանում, այն ամբողջ բերկրալից, յերջանիկ կյանքը, որ մենք ձեռք ենք բերել, արդյունք է հայ ժողովրդի բախտի նկատմամբ մեծ Ստալինի բացառիկ ուշադրի, հոգատար ու հայրական վերաբերմունքի: (Բուռն ծափահարություններ):

Հայաստանի բոլշևիկներն էլ ավելի սերտորեն համախմբվելով Համ. Կ(բ)Կ կենտկոմի շուրջը, կուսակցության առաջնորդ՝ ընկեր Ստալինի շուրջը, այսուհետև էլ ամենայն անողոքությամբ և անհաշտությամբ հաշվեհարդար կտեսնեն ժողովրդի բոլոր թշնամիների՝ տրոցկիստական մնացորդների, դիվերսանտների, լրտեսների և նրանց աջակիցների հետ:

Հայաստանի բոլշևիկներն այսուհետև էլ հայ ժողովրդի լայն մասսաների մեջ սերմանելու յեն ամենախոր սերը, անձնվիրության և յերախտագիտության զգացմունքը դեպի մեր մեծ կուսակցությունը, Լենինի–Ստալինի կուսակցությունը և դեպի ժողովուրդների առաջնորդ մեծ Ստալինը: (Բուռն ծափահարություններ):

Համ. Կ(բ)Կ լենինյան-ստալինյան անբեկուն ջոկատներից մեկը — Հայաստանի կոմունիստական (բոլշևիկների) կուսակցությունը Համ. Կ(բ)Կ Կենտկոմի և մեծ Ստալինի ղեկավարությամբ առաջ կգնա դեպի կոմունիզմի նորանոր հաղթություններ: (Բուռն, յերկարատև ծափահարություններ, վորոնք վեր են ածվում ովացիայի, բոլորը վոտքի յեն կանգնում. դահլիճից լսվում են բացականչություններ. «ՓԱՌՔ ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԻՆ», «ԿԵՑՑԵ՛ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՄԵԾ ԱՌԱՋՆՈՐԴ ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԸ», «ԿԵՑՑԵ՛ ՀԱՄ. Կ(Բ)Կ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՆ», «ԿԵՑՑԵ՛ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԵԾ ՄԻՈՒԹՅԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԼԵՆԻՆՅԱՆ-ՍՏԱԼԻՆՅԱՆ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ»):

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն — «Խորհրդ. Հայաստան»

Շարունակվում է 1937 թ.
բաժանորդագրությունը

# ,,ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ''

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ
Հ Կ (բ) Կ Կենտկոմի կուլտպրոպագանդայի
և ագիտացիայի բաժնի հրատարակություն

ԲԱԺԱՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . . 6 ռուբ.
6 » . . 3 »
» » . . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝
«Սոյուզպեչատ»-ի քաղաքային, շրջանային
բյուրոներին և փոստի բաժանմունքներին։